# ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ
## ՍՐԲՈՑ ՔԱՂԱՔԻՆ
# ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

ՔՆՆՈՒԹԵԱՄԲ ՀԱՄԱՌՕՏԵԱԼ
Ի ՀԱՆՆԱ ԵՒ Ի ՄԱՐԻՆՈՍ ՊԱՏՄԱԳՐԱՑ
ԸՆԴ ՈՐՍ ԵՒ ՅԱՒԵԼԵԱԼ ԲԱԶՈՒՄ ԲԱՆՍ
ՀԱՆԴԵՐՁ ԿԱՐԵՒՈՐ ԾԱՆՕԹՈՒԹԵԱՄԲՔ

ԱՇԽԱՏԱՍԻՐԵԱԼ
Ի ՄԿՐՏԻՉ ՎԱՐԴԱՊԵՏԷ ԱՐԾՐՈՒՆԵԱՆ
Ի ՄԻԱԲԱՆՈՒԹԵՆԷ ՍՐԲՈՑ ԱԹՈՌՈՅՍ
ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ
ՍՐԲՈՑ ԷՋՄԻԱԾՆԻ Տ. Տ. ՄԱՏԹԷՈՍ Կ.ԵՀԱՓԱՑՒ
ՍՐԲԱԶԱՆ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ

ԵՒ Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ Ս. ԱԹՈՌՈՅՍ ԵՐՈՒՍԱՂԷՄԻ
Տ. ՅՈՎՀԱՆՆՈՒ ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

ԵՒ Ի ՊԱՏՐԻԱՐՔՈՒԹԵԱՆ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼՍՈՑ Տ. ԳԷՈՐԳ
ՍՐԲԱԶԱՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ





ԵՐՈՒՍԱՂԷՄ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑ ՅԱԿՈԲԵԱՆՑ
1859

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

ԲՆԱԿԱՆ է մանկանացուիս անմոռաց մնալ յաղթուոր յայս կենցաղ՝ գոնէ արդեամբ իւիք. վասն որոյ ձեռնամուխ եղէ յայս գործ ՚ի յիշատակ յաւիտենական. և ըստ կարի իմում ջանեալ որոշեցի զատոյգն յանստուգէն, և զաւանդութիւնն յառասպելէն. և զհամառօտն շաւիղ կալայ, և զաւելորդն յապաւեալ ՚ի բաց եդի. զորոց և զվկայութիւնսն՝ որք ՚ի սուրբ Գրոց և յեկեղեցական պատմութեանց, մի ըստ միոջէ գլխով և համարով նշանակեցի։ Նաև ՚ի զանազան տեղիս բաղդատեցի զՀաննայի Պատմութիւնն ընդ Լատին Պատմագրին Մարինոսի. և այսու ևս ո՛չ շատացեալ՝ անձամբ անձին կա-

մեցայ չափիլ ընդ ամենայն մերձակայ Տնօրինական սուրբ վայրս Քրիստոսի՝ և յայլ նշանաւոր տեղիս, զորոց զշինութեանց՝ զչափուց՝ և զորպիսութեանց տեղեկացեալ՝ ականատես գտայ. այլ և յարտաքին վկայութեանց այլազան ազգաց քրիստոնէից հանճարեղ գիտնոց և ծերունեաց իբր կարօտութեամբ հարցափննեալ՝ արձանացուցի 'ի Ստորագրութեանս յայսմիկ։ Նաև ընվաղեմի Ջանասիրութիւնս և զվաստակս երևելի բազմերախտ Նախնի երանեալ Հարցն մերոյ Աթոռոյս կարճ 'ի կարճոյ վերստին ծանուցի 'ի սմա կարևոր պարագայիւք։ Նաև զայժմեան աշխատասիրութիւնն անպակաս գրեցի առանց աչառութեան՝ և ոչ իսկ 'ի շնորհուկս ինչ ումեք յաւելմամբ կամ բարդութեամբ 'ի վերայ, որպէս զի անկեղծ լինիցին բանքս և հաւատարիմ՝ որ 'ի սմա։

Այլ և Ազգիս մերում զյաճախեցեալ հանդիսաւոր Թափօրն՝ որ 'ի սուրբ Յարութեան տաճարն 'ի բոլոր ամս, զառանձինն և ընկերութեամբն ընդ Յոյնս՝ որոշ որոշ եդի բաց ամենայնի, թէ որպէս և երբ պարտ է առնել. և յայտնեցի զսկզբունս բարեկարգութեանն 'ի խաղաղութիւն ընդ ամենայն ազգաց. Տեղեկութիւն անուանելով զամենայն. և ս և նշանակեցի զընթերցուածս աւուրցն այնոցիկ հանդիսից՝ զԱւետարանս, և զՇարականս գլխովք և Թըւահամարաւ՝ առ 'ի դիւրաւ գտանել Ջերմեռանդն և Քրիստոսասէր խնդրողաց, մանաւանդ 'ի պէտս բաղձանաւոտակ Միաբանից, որք ան-

զերանէ զ՚ոլով ամենայն հանգստեանցն և որպիսու-
թեանց, այնպէս կատարեսցեն զհոգևոր պաշ-
տամունս իւրեանց 'ի փառս Աստուծոյ:

Արդ՝ այսու եղանակաւ որպէս թէ զիւրա-
քանչիւրոց ձեռանէ մտացն կալեալ, առաջնոր-
դել և ցուցանել կամեցայ Աստուածասէր հա-
ւատացելոցն Քրիստոսի և նորեկ միաբան սիրե-
լեաց. սակայն այսու ամենայնիւ անհնար է ու-
մեք լնուլ կրօնականն բաղձանս հոգւոյն, մինչ
կենդանի կայ սատէն 'ի մարմնի, այլ ևս քան
զևս բորբոքեալ վառի սիրով մաքուր սիրան և
սուրբ միտքն՝ որ վերանայ առ Աստուած:

Իւ յայսմ աշխատութեանս գործակից ինձ
գտաւ Աթոռանիստ Մայր Եկեղեցւոյն սուրբ
Աստուածածնի՝ Կոստանդնուպօլսեցի Պատուար-
ժան Տէր Գէորգ Քահանայ վարժապետն, որ 'ի
տպագրութեան սոյն Պատմութեանս ջերմե-
ռանդն սրտիւ եկեալ էր 'ի սուրբ Երուսաղէմ
յՈւխտ և յերկրպագութիւն Տնօրինական և
Սրբասահման Տեղեաց Քրի Աստուծոյ մերոյ:

Ապա և ես անարժանս ընդ ձեզ արժանա-
ցելոցդ ընթացան Վայրացս, արտասուախառն
հայցուածովք 'ի ծունր սրտի խոնարհեալ՝ ըն-
ձիւ հոգւոյ յորդեմ և պատուեմ զփրկագործ
սուրբ Տեղիս Յիսուսի Քրիստոսի. և ըստ ուղ-
ղափառ հաւատոյ մերոյ յուսով մեծաւ ակն
ունիմ միջնորդութեամբ բարեխօսութեան սրբելի
Աշակերտաց իւրոց՝ և ամենայն սրբոց, արժա-
նի լինել անդէն և ձեզ հանդերձ իսկապէս
տեսանել զերկնային փառս Աստուածութեանն.

Դ

և անմահ կենդանութեամբ յագիլ և լիանալ ըստ հոգւոյ յարուցեալ ՚ի մեռելութենէ մարմնոյ՝ ասելով ընդ Դաւթի. « Յագեցայց յերևիլ փառաց քոց »: Սաղմ. ԺԶ. 25:

Նուաստ ծառայ ծառայիցն Աստուծոյ
Միաբան սուրբ Երուսաղէմի
Մ. Վ. Արծրունեան:





# ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ
## ՍՐԲՈՑ ՔԱՂԱՔԻՆ
## ԵՐՈՒՍԱՂԷՄԻ

### Սկսեալ ՚ի Պաղեստինոյ։

ՊԱՂԵՍՏԻՆ *կոչի երկիրս ՚ի գլխաւոր մասանէ իւրմէ, որ առաւել պարարտ է և բերրի քան զայլ մասունս. և յեզերս միջերկրական ծովուն կառուցան ՚ի հնումն հռչակաւոր քաղաքք. Կեսարիա, Ազովտոս, Ասկաղոն, Գազա, Հռամա, Լիւդ, և այլ բազում. և էր բնակարան Փղշտացւոց, այսինքն Ֆիլիստացւոց. վասն այսորիկ մինչև ցայսօր ՚ի լեզու Արաբացւոց կոչի Ֆալէսթին, որ է Պաղեստին։ Իսկ Երուսաղէմ անկանի ՚ի հարաւ Պաղեստինոյ. և սա համարեալ լինի կալ ՚ի միջին տեղւոջ երից մասանց աշխարհի. այսինքն Ափրիկոյ՝ կամ Լիբիոյ, Ասիոյ, և Եւրոպիոյ. յոր միտ առի Սիրտ երկրի։ «Բնակեալ ՚ի սիրտ երկրի»։ Եզեկ. ԼԸ. 12։ Զի է իբր սիրտ՝ որ յորովայն կենդանւոյ՝ Ափրիկոյ, Ասիոյ, և Եւրոպիոյ. որ անկանի Հարաւոյ անատօլեայ. այսինքն Արևելեան, կամ Ասիոյ։*

*Նաև Տէրն մեր ըստ խորհրդական իմաստից, Սիրտ երկրի կոչեաց զԵրուսաղէմ. «Նոյնպէս*

եղիցի և որդի մարդոյ 'ի սիրտ երկրի զերիս տիւս և զերիս գիշերս»: Մատթ. ԺԲ. 40: Եւ 'ի Շարականին ասի. «Կանգնեցաւ քառակերպն այսինքն խաչն՝ 'ի միջակին, դիտելով ընդ Հարաւ»:



Յաղագս հիմնադրի սրբոյ Քաղաքին:

ՀԵՂԻՆԱԿ հիմնարկութեանն կարծի լինել Սաղէմ՝ Մեղքի հայրն Մելքիսեդեկի, ըստ եկեղեցական պատմութեան. Մեղքի՝ Թագաւոր ասի. Սեդեկ՝ արդարութիւն. վասն որոյ կոչի նա յանուանէն Թագաւոր արդարութեան. և Թագաւոր խաղաղութե անուանի՝ 'ի բնակութենէն. զի Երուսաղէմ Թարգմանի խաղաղութիւն, զոր շինեալ էր հայր նորա Սաղէմ Մեղէք, և կոչեաց յանուն իւր: Մարթինոս ասէ, Մելքիսեդեկ քահանայ Աստուծոյ Թագաւոր Քանանացւոց շինեաց զայս քաղաք 'ի լեառն ասացեալ. և կոչեաց զնա Սաղէմ: Եւ Մելքիսեդեկ արքայ Սաղէմայ. Ծննդ. ԺԴ. 18: Հիմնեցաւ 'ի Մելքիսեդեկէ յամի աշխարհի ըստ եօթանասնից՝ 3291: Եւ ըստ ժամանակագրաց՝ 2023 *:

* Տէր Խորայէլ 25 մարտի: Զոր ամենք յաւանդութենէ անյայտ գրոց առեալ պատմեն. Թագաւորն Սաղէմ շինէ քաղաք՝ և կոչէ ըստ անուան իւրում Սաղէմ, և ծնանի զՄելքին. և Մելքի առ իւր կին զՍաղա՝ և ծնաւ 'ի նմանէ որդի, և անուանեաց ըստ անուան իւրոյ Մելքի: Եւ դարձեալ ծնաւ որդի, և անուանեաց Մելքիսեդեկ. և հայրն սիրէր զՄելքի, և մայրն սիրէր զՄելքիսեդեկ:

Յետ այնորիկ կալան Յեբուսացիք զԵրուսա-
ղէմ, ամս 824. ուստի անուանեցին զՍաղիմն
Յեբուս։ Եւ Քանան ծնաւ զՍիդոն զանդրանիկ
իւր, և զՔետացին և զՅեբուսացին. Ծնն. Ժ. 15,
16։ Յամի աշխարհի 3949. Դաւիթ վարեաց զՅե-
բուսացին, և նորոգեաց զքաղաքս, և ամրացոյց
զբուրգն Սիոնի, և կանգնեաց զպարիսպ շուր-
ջանակի, վասն որոյ կոչեցաւ քաղաք Դաւթի.
«Եւ նստաւ Դաւիթ յամրոցին, և կոչեցաւ այն՝
քաղաք Դաւթի. և շինեաց զնա քաղաք Դա-
ւիթ շուրջանակի ծագէ ՚ի ծագ, և զտուն իւր».
Բ. Թագ. Ե. 9։

Ապա նորոգեցաւ ՚ի Սողոմոնէ. յետոյ ՚ի Նե-
էմիայ և յայլոց բազմաց։ Յեբուս փոխեցաւ Յե-
բուս, որ և Երուսաղէմ. նա և Հիերուսաղէմ. տես
՚ի Թիւ 9։ Նա և կոչի Արիէլ քաղաքն Երու-
սաղէմ. վասն հզօրեղութեան և իշխանութեան.
Եսայ. ԻԹ. 1։

Յամի աշխարհի 3102. յետ ելանելոյ որդւոցն
Իսրայէլի յԵգիպտոսէ, որք 440 ամ մնացին իբ-
րև զգերի. և նախ քան զՔրիստոս 1007 ամօք.
արար Սողոմոն հիմնարկութիւն տաճարին. «Եօ-
թըն ամ շինեցաւ, և եղև կատարումն նորին».
Գ. Թագ. Զ. 1. 440 ամս եկաց մնաց ՚ի պայ-
ծառութեան։

Ապա 602 ամօք՝ նախ քան զՔրիստոս առաւ
Երուսաղէմ ՚ի Նաբուգոդոնոսորայ, որ աւե-
րեալ մատնեցաւ յայրումն հրոյ. և գերեցաւ
Իսրայէլ. Դ. Թագ. ԻԵ. 9։ Երկրորդ շինութիւն
եղև ՚ի Զօրաբաբելէ և յԵզրայեցւոյ 511 ամօք

Նախ քան զՔրիստոս . Բ . Եզրաս . Զ . 18 ։ Եւ շինեցաւ ամս 46 . «Զքառասուն և զվեց ամ շինեցաւ տաճարս այս». Յովհ . Բ . 20 ։ Զոր տեսեալ ծերոց ընդ զանազանութիւն առաջնոյ շինութեանն . և երկրորդին՝ լային , զի անշուք էր . Բ . Եզրաս . Գ . 12 ։

Նոյն Նախ քան զՔրիստոս 172 ամաւ աւերեցաւ յԱնտիոքոսէ , և մնաց աւերակ ։ Նոյն յամի աշխարհի 5186 . մեծն Հերովդէս կամեցաւ նորոգել զտաճարն Երուսաղէմի , առ որելի ընծայելոյ զինքն ազգին Հրէից , և ցուցանելոյ թէ իցէ Մեսիայ . Ի պատմ . Հայ . Ա . հատ . յերես 270 ։ Իսկ ոմանք թէ՝ քակեաց Հերովդէս ՚ի հիմանց զտաճարն . և շինեաց մեծ քան զառաջինն , այսինքն քան զերկրորդ շինութիւնն . այլ ո՛չ մնաց ինչ ՚ի շինութեանց Սողոմոնի , բայց միայն սրահն՝ որ կոչիւր գեղեցիկ . Գործ . Գ . 2 ։ Եւ կամ կոչիւր Սողոմոնի՝ զարմացեալք . Գործ . Գ . 11 ։

Յամի աշխարհի 5198 . Թագաւորէ Աբգար ՚ի վերայ Հայոց , ՚ի մօտ յերկրորդ ամի թագաւորութեան նորա ծնաւ Յիսուս փրկիչն մեր ՚ի սուրբ Կուսէն Մարիամայ ՚ի Բեթլեհէմ քաղաքի , և այլն ։

---

Յաղագս գալստեան կնոջն Աբգարու արքային մերոյ Հեղինէ թագուհւոյն յԵրուսաղէմ, և շինութեան սրբոց ժառանգաց 'ի Տնօրինական տեղեան Քրիստոսի, և գործոց բարեպաշտութեան, և մահուանն և գերեզմանի նորա։

Յամի Տեառն 1853. յամսեան Յունիսի, մինչ եկեալ 'ի Դերջանու և 'ի կարնոյ՝ չուեալ դիմեալ գայաք յԵրուսաղէմ. յաջողութեամբ Տեառն՝ եկեալ հասաք 'ի քաղաքն Հարգան, որ է հաճըն. և 'ի վանս որբոյն Յակոբայ Մծբնայ ըզանչելագործ հայրապետին՝ օթևանս կալաք անդէն զաւուրս մետասան. յաւուր միում կամեցաք փափաքանօք մտանել 'ի գրատունն նորին. Աւսաւ հրամանաւ Պետրոսի արհի եպիսկոպոսի հեզահամբոյր առաջնորդին, Գրիգոր վարդապետ ձեռնասուն նորին առեալ զմեզ՝ եմոյծ 'ի գրատունն. և մեր որոնեալ և քննեալ զամենայն գրեանս, յորում բազում ձեռագիրս գտաք հնագոյն և աղճատեալ գրովք, որ ոչ էր մարթ ընթեռնուլ։ Այլ գտաք տետրակ մի առանց թղթահամարոյ բաղկացեալ քսան և ինն մագաղաթեայ թղթով, որոյ սկիզբն և վերջն պակաս. և ընկզքնատառքն էին կարմրագրով, և 'ի ներքոյ նորա կարգ մի ամբողջ կապուտակ հին բոլորագրով. իսկ 'ի լուսանց հինգերորդ թղթոյն գրեալ կարմրագրով՝ թէ թարգմանեալ յԱսորոց 'ի Հայ լեզու յընտիր գաղափարէ, յաւուրս Գրիգորի Մագիստրոսի, և որդւոյ նորա Գրիգորի վկայասիրի՝ որ է Վահրամ, 'ի քաղաքն Սիս, յորմէ այսչափ ինչ կարացաք օրինակել։

« Ամենաբարեպաշտ և գթածանիրտ մեծ
» Թագուհին Հեղինէ կինն Աբգարու Թագա-
» ւորին Մերոյ և Ասորոց, հրաժարեալ յամե-
» նայնէ, և 'ի բաց լքեալ թողեալ զփառս վայ-
» ելչութեան պետութեան իւրոյ. և աշխարհի.
» գնայ յԵրուսաղէմ յամի Տեառն քառասուն
» և երկու. յոսկիզբն ամսոյն Մայիսի: Եւ էր
» յԵրուսաղէմ և 'ի սահմանս նորա սով մեծ.
» վասն որոյ ետ զգանձս իւր ամենայն, և գը-
» նեաց կերակուր յԵգիպտոսէ, և 'ի Կիպրոսէ,
» և յայլ տեղեաց, որովք կերակրէր զամենե-
» սեան՝ որք առ նա դիմէին. և տիկինն Հեղինէ
» առատագութ սրտիւ բաշխէր, ոչ ինչ խարե-
» լով զհրէայս և զհեթանոսս 'ի հաւատացե-
» լոցն . . . . որոյ յաւգնութիւն եհաս մեծ
» զաւրավարն Խուրան. որում հաւատարմաբար
» ծառայէր մինչ 'ի մահն իւր: Եւ յետ հինգ-
» երորդ ամի կացութեան իւրոյ յԵրուսաղէմ.
» մինչ լինէր առատութիւն կերակրոյ, և վերա-
» նայր սովն 'ի հրէաստանէ և յԵրուսաղէմէ.
» ձեռն արկ և սկսաւ պարապել 'ի շինութիւն
» մատրանաց: Նախ ձեռն էարկ շինել մատրան
» իմն՝ մեծամեծ քարամբք բրգաձև 'ի վերայ
» շիրմին Քրիստոսի: Եւ այլ փոքր մատրան ինչ
» 'ի լեառն ձիթենեաց 'ի վերայ սուրբ Ելանա-
» տեղւոյն Քրիստոսի: Նոյն շրջապատեաց քա-
» րամբք զսուրբ Այրն ծննդեանն Քրիստոսի որ
» 'ի Բեթլեհեմ քաղաքի. և սուրբ Մօրոյն, յա-
» րում եդաւ մանուկն Յիսուս խանձարրապատ:
» Եւ հուսկ ուրեմն ետ յաւրինել կամար մի 'ի

» վերայ շիրմի Յակոբայ մեծի առաքելոյն որդւոյն
» Զեբեդեայ . . . ուր ստէպ այց ելանէր առ
» սուրբ կոյսն մայրն Յիսուսի մերձ 'ի վերնա-
» տունն Սիովնի . . . . Եւ յետ յեօթներոր-
» դում ամի կացութեան, վախճանի անդ . և
» թաղի առաջի դրանն Երուսաղէմի, որ 'ի հիւ-
» սիսակողմն քաղաքին, զկնի երկրորդ ամի վե-
» րափոխման սուրբ Կուսի մաւրն Յիսուսի . 'ի
» Սեպտեմբեր ինն » :

Նոյնչափ ինչ կարացաք հաւաքել անտի : Տես, զորմէ գրեն Եւսեբիոս Բ. 12 : Եւ Խո-րենացի, Բ. Հատ. Գլուխ 32 : Ի պատմութիւն Հայոց, Ա. Հատ. յեր. 296. 389 : Վարք սրբոց, յերես 984 :



## Յաղագս Գերեզմանի Թագաւորացն Հրէից :

ՀԵՂԻՆԷ կինն Աբգարու Թագաւորին մերոյ գնաց յԵրուսաղէմ, յամի Տեառն 42. յաւուրս Կղաւդեայ կայսեր . յայնմ ժամանակի եղև սով սաստիկ յԵրուսաղէմ ըստ նշանակելոյն Ագաբոսի, Գործ. ԺԱ. 28 : Նա տուեալ զամենայն գանձս իւր . գնեաց ցորեան յԵգիպտոսէ և 'ի Կիպրոսէ բազում յոյժ, և բաշխեաց կարօտելոց :

Եւ 'ի մեռանիլն նորա, Թաղեցին զնա փառօք առաջի դրանն Երուսաղէմի իբր բարերար ազգաց . շինեալ նմա շիրիմ նշանաւոր, որպէս

յիշէ Եւսեբիոս և Խորենացի, թէ գայր այն
չիրիմ մինչ 'ի ժամանակս իւրեանց. քանզի Խո-
րենացին ականատես իսկ է: Գրէ և Թովմայ
Արծրունի, յերես 52. թէ Հեղինէ թագուհի
կին Աբգարու, և մեծ զօրավարն Խուրան Արծ-
րունին փոխանակին յԵրուսաղէմ . . . : Նոյն այն
Խուրան է զոր Աբգար առաքեաց բազում զօ-
րօք 'ի վերայ Հերովդէի. և պարտեաց զնա, և
զզօրս նորա. Խորէն. Գիրք Բ. Գլուխ 28:

Մարինոս Լատինացի գրէ յառաջին գիրս, 'ի
վերջ չորրորդ գրոցն. Հեղինէ կին Իզաթիոսի
Թագաւորին Ատիաբինացւոց գաւառին եղելոյ
անդր գետոյ Եփրատայ . . . ցանկանալով տե-
սանել զփառաւոր տաճարն Սողոմոնի. չուեաց
յԵրուսաղէմ ընկերութեամբ սակաւ ինչ ընդ-
որդւոյ. հեթանոս արդէն եղեալ էր Հրէայ, և
այլն . . . յիշէ զսովն և զցորեանն: Նոյա ասէ,
արդ՝ Մոնօպասոս որդի իւր զոսկերս մօր և եղ-
բօր 'ի միասին առաքեաց յԵրուսաղէմ, հրա-
մայելով թաղել 'ի փառաւոր գերեզմանի. զոր
մայր իւր շինեալ էր հեռի յԵրուսաղէմէ երեք
ասպարիզօք . . . : Ի հիւսիսային կողմն սորա
Քաղաքին. որովհետև մերձ դնէ գերեզմանաց
Թագաւորաց, որ կոչի այր Թագաւորաց: Որ-
պէս գրէ Ադրիգօմինոս, յերես 263: Եւ այլուր
'ի գիրս իւր յիշէ Մարինոս, թէ գերեզմանն
Հեղինէի է երեք մղոնաւ հեռի 'ի դրանէ Դա-
մասկոսի, 'ի հիւսիսակողմն քաղաքիս Երուսա-
ղէմի. ուր գնան յուխտ Լատինք:

Բայց ոմանք աւանդութեամբ ասեն թէ՝

գերեզման հեղինէի է 'ի ներքս պարսպին Երուսաղէմի, 'ի հիւսիսոյ դրանն Դամասկոսի դէպ յարեւելս 'ի բարձր տեղւոջ. յորոյ վերայ հնաշէն հոյակապ մզկիթ մի է. բայց չերեւի ստուգութիւն նորին. այլ սակաւ ինչ հաւանական երեւի բան Մարինոսի. բայց եւ ասեմ, չէ՛ յայտնի գերեզման նորա ։ Յամի Տեառն 70. կործանեցաւ 'ի Տիտոսէ Վեսպասիանոսէ ։ Ի գերութեանն Երուսաղէմի առ Տիտոսիւ. քարինք տաճարին աղաղակէին թէ, գնամք աստի գնամք, եւ այլ ոչ եւս դառնամք ։ Տե՛ս, Ի Վարս սրբոց ։ Ի Պատմութեան Հայոց ։

Յետ աւերմանն Երուսաղէմի առ Տիտոսիւ, Հրէայք ժողովեալ բնակեցան յԵրուսաղէմ, եւ դարձեալ ապստամբեցան 'ի Հռովմայեցւոց. յամի Տեառն 122. Ադրիանոս կայսրն՝ որ էր եղբօրորդի Տրայիանոսի Սպանիացւոյ. եկն յԵրուսաղէմ եւ կոտորեաց զՀրէայս. եւ զմնացեալսն ցիր եւ ցան արար. եւ զսուրբ քաղաքս պարսպեաց զաւերեալն 'ի Տիտոսէ. եւ հրամանեաց Քրիստոնէից բնակիլ անդ՝ եւ ոչ Հրէից. եւ զՏեառն Գողգոթայ զտեղի չարչարանացն Քրիստոսի, որ յառաջ արտաքոյ քաղաքին պարսպէր էր, զայն էառ 'ի մէջ քաղաքին. եւ գրեաց խրատիւ պատուէր ոչ ներել զոք 'ի հաւատացելոց քրիստոնէից. եւ զքաղաքն կոչեաց յիւր անուն Ելիանոպոլիս. քանզի մականունն Ադրիանոսի կոչէր Ելիոս ։ Ի Պատմութեան Հայոց, յերես 73 ։ Եւ կոչեցեալ Ելիա Քապիթոլինա ։

Ապա յետ 57 ամի Տիտոսի, Ադրիանոս եր-

բորբ՝ քակեաց զտաճարն, և ընկէց զքարինս նո-րա ՚ի ձորն Յովսափաթու :

Մարկիոս ասէ. մինչ Ադրիանոս երկրորդ՝ էառ զԵրուսաղէմ և աւերեաց զամենայն, կանգնեաց զարձանն Թամուզայ ՚ի Բեթղեհէմ ՚ի վերայ Մսուրին, ուր եդաւ Յիսուս փրկիչն մեր. և զարձանն Լուսնթագին ՚ի սուրբ Գողգոթայ ՚ի տեղւոջն խաչելութեան. և զարձանն Հրատին ՚ի վերայ կենդանատու Գերեզմանին Տեառն, առ ՚ի բառնալ զյիշատակ չարչարանացն Քրիստոսի:

Իսկ յամի Տեառն 327. մեծահաւատ թագուհին Հեղինէ մայրն Կոստանդիանոսի կայսեր եկեալ յԵրուսաղէմ, եգիտ զփրկական խաչն Քրիստոսի, և եբարձ զկուռսն, և շինեաց զեկեղեցիս ՚ի սուրբ Տեղիսն անօրինականաց :

Յամի Տեառն 361. մինչ թագաւորեաց ուրացողն Յուլիանոս, կանգնեաց վերստին զըն-պատկերս կռոց ՚ի սուրբ Գողգոթայ և ՚ի գերեզմանի Տեառն. և ետ հրաման Հրէից շինել զտաճարն. ՚ի փորել հիմանցն՝ ել հուր, և այրեաց զշինողս նորա, և զամենայն նիւթս. և ոչ մնաց ինչ նշան ՚ի հնոյն. բայց միայն սակաւ ինչ ՚ի պարսպէն՝ ՚ի յանկեանն, որ առ արեւելս և առ հարաւ, որ հանդէպ Սելովամայ. որ կայ դեռ մինչև ցայսօր ժամանակի :

Նոյն կատարեցաւ բանն մարգարէութեան Տեառն մերոյ թէ՝ «Ոչ յատակեսցեն զքեզ և զորդիս քո ՚ի քեզ..., փոխանակ զի ոչ ծանեար զժամ այցելութեան քո»: Ղուկ. ԺԹ. 44: Մարկ. ԺԳ. 2:

Յամի Տեառն 614. Խոսրով Ապրուիզ կոչե-ցեալն արքայն Պարսից. որ կոչիւր Խոռեամ Փառազ-ման կամ Շահվարազ. առաքեաց զփեսայ իւր Եռազմայուղան զխոռեամ. և էառ զԵրուսաղէմ. զոր աւերեալ կոտորեաց զյիսուն և եօթն հա-զար անձինս 'ի բնակչացն, և գերեաց զերեսուն հազար անձինս, ընդ որս և զԶաքարիա պատ-րիարգն՝ և զխաչն կենարար. և տարաւ առ Խոս-րով արքայն *:

Իսկ յամի Տեառն 625 կամ 627. Հերակլէ կայսր դարձոյց զխաչն 'ի գերութենէն. և բե-րեալ զայն մեծաւ հանդիսիւ՝ եդ 'ի սուրբ Գող-գոթայ 'ի տեղւոջ իւրում:

Յամի Տեառն 717. և Տաճկաց 7V, Օմար ամիրապետն Տաճկաց, Խաթթապ կոչեցեալն, որդի Խաթթապայ, որ երրորդ էր զկնի Մահմետին. քան ումանց յամի Տեառն 637. շինեաց Եօմէր զտա-ճարն, և որդի Մերվանայ Աբդըլ Մէլէք շքեղա-ցոյց զարդուք զմզկիթն, և կոչեն Էլ Աքսայ, այս է ծայր կամ եզր Մէսճիտ ճէամիի, առ 'ի որոշել 'ի միւս շինուածոյն քեամլէին. սակս և այլուր թէ՝ Սա նորոգեաց զտաճարն Սողոմոնեան. քան-

---

* Սեբէոս ԻԴ. յերես 130. Այլուստ Խոսրով. Մարգաց 19. զկնի տասն աւուր զատկի առին Պարսից զօրքն զԵրուսաղէմ. Թիւ սպանելոցն տասն և եօթն հազար, և գերի վարելոցն երեսուն և հինգ հազար. ընդ որս և զԶաքարիա հայրապետն. և զխաչապատն և զփայտն կենաց գերի վարեցին, և այլն: Եւ Մոդեստոս եկեղեցին կարգէ առաջնորդ յԵրուսաղէմ. և գրէ նամակ 'ի սուրբ Էջմիա-ծին առ Տէր Կոմիտաս կաթողիկոսն:

Անդ Սեբէոս ԻԹ. յերես 157. Հերակլէս կայսրն դարձուցանէ զսուրբ խաչն՝ և բերէ յԵրուսաղէմ, և այլն:

զի եկն Ոմառ զօրօք յԵրուսաղէմ, ուր կառուցց տաճարն ութանկեան, զոր վայելեցին ամս 450:

Ի Յառագիրս ինչ գրեալ ի Սոփրոնիոս Գերադ տերն, յորմէ ժողովեցաւ համառօտ ինչ զոր ունիմք առաջիկ յայլուստ :

Մինչ յամի Տաճկաց 16 Եօմէր խալիֆայ, կամ որդի Խաղտապայ եկն և էառ զԵրուսաղէմ. Նախ գրեալ յեռակար, և ետ Սոփրոնիոս պատրիարքին, և ապա բացեալ զդուռն քաղաքին Երուսաղէմի, և 'ի ներքս մուծեալ զզօրս իւր, նախ եմուտ և բաղնեցաւ 'ի գաւիթ սրբոյ Յարութեան տաճարին, և յեկեղեցին ոչ կամեցաւ աղօթս առնել ըստ իւրում դենին. զի մի յապագայս ազգն իւր յափշտակեալ ինքեան իւրացուսցէ : Ապա առեալ Սոփրոնիոսի զԵօմէր՝ մուծանէ յեկեղեցին Կոստանդիանոսի, և 'ի նմա և ոչ աղօթեաց՝ յայն միտս. այլ 'ի վերայ աստիճանին. վասն որոյ ետ յեռակար մուրհակի առ Սոփրոնիոս, զի մի ոք իշխեսցէ 'ի Տաճկաց՝ կալ յաղօթս հանդիսիւ 'ի վերայ աստիճանին այնորիկ, այլ մի զկնի միոյ. և մի երկուն կարդասցեն անդ 'ի ժամ աղօթից : Ապա ասէ ցՍոփրոնիոս պատրիարքն. արդ՝ իրաւունս կալցիս, զի տացես ինձ տեղի մի, յորում կառուցից աղօթանոց կամ մզկիթ : Ասէ Սոփրոնիոս բարւոք է. արդ ես ցուցից քեզ տեղի մի, ուր շինեսցես մզկիթ. կալեալ զձեռանէ Եօմարայ որդւոյ Խաղտապայ՝ կացոյց 'ի վերայ աղբիւսին, ուր էր աւերեալ տաճարն Սողոմոնեան : Նա ասէ տեղի, յորմէ

ձեռնթափ եղեն Թագաւորք Հռոմայեցւոց, ՚ի
շինելոյ զնա. և սա է մէծն՝ յորոյ վերայ խօսե-
ցաւ Աստուած ընդ Յակոբայ. զոր կոչեաց Յա-
կոբ՝ Դուռն երկնից. և որդիքն Իսրայէլի ան-
ուանեցին զնա՝ Սրբութիւն սրբոց, ուր և յե-
տոյ շինեաց Սողոմոն զտաճարն, և այլն: Եւ
Իսրայէլ ունելով զդէմս առ մէծն աղօթէր:
Մահմետական եռ պեղել զաղբիւրն, և զկու-
տեալ հողն՝ որ ՚ի վերայ նորա բառնալ անտի, ե-
րևեցաւ մէծն, որ ՚ի լեզու Արաբի կոչի Սախրա՝
այսինքն վէմ. և ոմանք ՚ի մեծամեծաց սախալէին
զխօսէր, շինել զմզկիթն. և զվէմն առնուլ ՚ի
մէջ որմոյն. բայց ոչ հաճեցաւ ընդ այն. այլ
ասէ, կացցէ վէմն ՚ի մէջ մզկիթին:

Իմուստ մետասան դարուն՝ այն է յամի Տեա-
ռըն 1011 Էլ Մանսուր Հաքիմի խալիֆէ, ՚ի հա-
րստութենէ Ֆատիմեանց Եգիպտոսի. սա եռ
կործանել զտաճարն սրբոյ Յարութեան, զի ոչ
կարէր հանդուրժել ասէ, խաբէութեան կար-
ծեցելոյ հրաշալի հրոյն, զոր ելանել ասէին Յոյնք
՚ի ճրագալուցի զատկին:

Սակայն յետ 37 ամի, Կոստանդին Մոնոմա-
քոս կայսրն Յունաց. յամի Տեառն 1048, սա
այն է՝ որ խնդրեաց զԱնի քաղաքն ՚ի Գագիկ
արքայէն. ընկալաւ հրաման ՚ի Թոռանէ Հա-
քիմայ վերստին շինելոյ զնոյն աւերեալ եկեղե-
ցին սրբոյ Յարութեան, և զծախսն շինութեան
ետ ինքն կայսրն յիւրոց գանձուց, որպէս պատ-
մէ Գուլիէլմոս արհի եպիսկոպոսն Տիւրոսի:

Մեռաւ Սոֆրոնիոս ՚ի Դ. ամի պատրիար-

դուԹեան իւրոյ ։ և մնաց Երուսաղէմ առանց պատրիարգի ղամս 29 ։ Ընկաւ Երուսաղէմ ընդ իշխանուԹեամբ Տաճկաց , մինչև 'ի Թիւ Տաճկաց ՆՂԲ ։ Այս յամի Տեառն 1099 առին Լատինք ․ մնաց 'ի ձեռս նոցա ամս 88 ․ 'ի Թիւ Տաճկաց ․ՇՁԳ ։ Յամի Տեառն 1187 , յորում առեալ էառ զԵրուսաղէմ Իւսուֆ Սալահատին ․ ( ըստ Մարինոսի , քակեաց զզանգակատունն որոյ ՅարուԹեան ․ այլ բազում միջնորդուԹբ Թագաւորաց քրիստոնէից ոչ քակեաց զեկեղեցին ․) փոխանակ որոյ նորոգել ետ Թագաւորն Հոռոմոց 'ի ՂալաԹիայն կոստանդնուպօլսոյ Արապ ճամիսին՝ զի յանուն իւր խութբէ կարդացին 'ի նմա ։

Մնաց մինչ 'ի Թիւ Տաճկաց ՋԻԳ ընդ իշխանուԹեամբ Եգիպտոսի ։ Այս Սուլթան Սէլիմ սպան զԳանսուղավրի սուլԹանն Եգիպտոսի մերձ 'ի Բերիա ․ անտի դիմեաց յԵգիպտոս՝ էառ 'ի ձեռաց Տումանպայի սուլԹանին , որ էր եղբօր որդի Գանսուղավրիին , և եկեալ էառ զԵրուսաղէմ ․ որոյ որդին Սիւլէյման Սուլթան շինեաց զպարիսպն քաղաքիս , և այլն ․

Այս էառ կօԹիֆռատոս 'ի ձեռաց Յունաց յամի Տեառն 1099 զԵրուսաղէմ և զսուրբ ՅարուԹիւնն ․ Ի պատմ․ Հայ․ Գ․ հատ․ յէր․ 20 ։ Յամի Տեառն 1099 ․ 'ի Յունիսի 5 ․ հասին Լատինք յԵրուսաղէմ քաղաք ․ և պաշարեալ զաւուրս 40 առին զայն , 'ի Յուլիսի 15 , յաւուր ՈւրբաԹու ․ և յետ ուԹ աւուրց կացուցին Թագաւոր Երուսաղէմի զԿոնդոպրէ , որ է կօԹիֆռատոս ։ Այս որոյ եղբայրն Բաղտին Ա ։ Իաղտին Բ ։ Փուլկ

զօնս Ռաղոսին Գ. Սեմերին. Ռաղոսին Դ. Հուսկ յետոյ Գուիտոն Լուսինեան, յորմէ էառ զԵրուսաղէմ Խուսուֆ Սալահատին, յամի Տեառն 1187.

Ի պատմութիւն Հայոց, Գ. հատ. յեր. 184. Սա էր որդի Նուրայ ուրումն 'ի Դունին քաղաքէ, որ եկն առ Նուրիտին ամիրային Բերիոյ, և կարգեցաւ նմա զօրավար. և օր ըստ օրէ զօրացեալ տիրեաց երկրին Ասորւոց. գնաց յԵգիպտոս՝ սպանեալ զՍուլթանն և նստաւ անդ....: Նա և Ռէյմունդ կոմս Տրապոլսոյ՝ որ էր ազգականին, եղև օգնական Սալահատինայ, և էառ զՊտղոմայիդ՝ որ է Աքիա. զԱսկաղոն, զԼաւոդիկէ. և եկեալ կալաւ զարքայն Երուսաղէմի զԳուիտոն և զմեծամեծ իշխանս ընդ նմա. ապա բազում պարգևօք և որօք հազիւ ուրեմն արձակեաց զնոսա։ Նա ապա կալաւ զքաջ զօրավար նորա Ռենալդոս, և սպան զնա. և հուսկ յետոյ էառ զԵրուսաղէմ, յամի Տեառն 1187. և Հայոց՝ ՈԼԶ. տիրեցին Լատինք Երուսաղէմի զամս 88։

Գրէ Մարինոս Թէ՝ արքայն Կոտրիֆոսատոս էառ զԵրուսաղէմ 'ի Ջահկաց, և շինեաց ըկանոնիկոս մի. և մերձ նմա կանգնեաց պալատ մի հոյակապ, յորում եդ զխաչափիր զօրսն. և մնաց ընդ իշխանութեամբ Լատինացւոց ամս 88. տե՛ս 'ի պատմութեան Հայոց, Գ. հատ. յեր. 184։

Ռոն Վահրամայ Ռեռ հայեցւոյ 'ի ժամանակի առմանն Երուսաղէմի, յամի Տեառն 1099, անդ գտաւ և մեծն Գրիգոր վկայասէր՝ որ կոչեր

Վահրամ, որ կրկին անգամ գնացեալ էր 'ի փուրբ անդրէն վասն ուխտի. 'ի պատմութեան Հայոց. Գ. հատ. յէր. 20: Սեր երգեաց զՇարականս, ժի. զխորհուրդ անճառն. և ժէ. զՄեծահրաշն:



Եւ այժմ որպիսի՞ իցէ տաճարն Սողոմոնեան, և ի՞նչ իւիք գեղանի 'ի նմա:

Երկայնութիւն զաւթի տաճարիս 'ի հիւսիսոյ առ հարաւ է 650 կանգուն. և յարևելից առ արևմուտս լայնութիւնն է 440 կանգուն:

Տաճարն է ութանկեան, կառուցեալ 'ի վերայ քառակուսի սեանց. որոյ գմբէթն յեցեալ կայ 'ի վերայ ութից սեանց, և որմք նորին 'ի ներքուստ և յարտաքուստ յախճապակեայ գունագոյն քարամբք զարդարեալ. և ունի չորեսին դրունս՝ 'ի չորս կողմունս: Ի ներքոյ գմբեթին 'ի կեդրոն տաճարին դ.դ. մեծագոյն վէմ մի՝ զոր Սախրալլահ Բաշըր անուանեն, միով կանգնաւ բարձր է 'ի յատակէն. յորոյ վերայ արկանի ծածկոյթ ազնիւ, և 'ի ներքոյ նորին է այր մի խորագոյն յոյժ. յոր իջանէ 15 աստիճանաւ, որոյ դուռն հայի՝ ընդ հիւսիս, և մտանէ 'ի հարաւ. որոյ բարձրութիւն 'ի յատակէ այրին մինչ 'ի վէմն է երեք կանգուն, (զկանգունն իմա 24 մատնաչափ). և առ հարաւն ունի Մէհրապ. որոյ երկայնութիւնն է 20 կանգուն, և լայնութիւնն 16. յոր մտեալ 'ի վերայ երեսաց՝

համբուրելով պատուեն զայն։

Եւ զտաճարս զայս Սահրաթօղլեան անուանեն, այսինքն Տաճար Աստուծոյ։ Նա ՚ի ներքս ՚ի խորանին անդ դնիւր Տապանակ ուխտին, որ կաչիւր Սրբութիւն սրբութեանց։ Եւ ըստ ոմանց՝ Սախրաթօղլեան, այսինքն Վէմ Աստուծոյ. զոր Յակոբ կանգնեաց յետ անօլեանն. Ծնն. ԻԸ. 17, 18։

Եւ միւս տաճարն, զոր մեք այժմ Սրբութիւն սրբութեանց կոչեմք. Բ. Մնաց. Գ. 8։ Եւ նոքա անուանեն Հարէմի շէրիֆ, և Արապք Էլ Աքսա. սա ունի դդրունս չորս ընդ արևելս, և զերկուս առ արևմուտս, և զերկուս առ հիւսիս. ութն դրամբք մտանեն և ելանեն. զառ պահեն յարգանօք, և ՚ի մեծի աւուրս Պայրամից. և յայլ աւուրս մտանեն անդ յաղօթս, կարծի յամանց՝ թէ Տապանակ ուխտին աստ եղաւ, բայց չէ հաւանական։ Ի սմա է քարն կոխեալ ոտին Քրիստոսի՝ զոր տարեալ են ՚ի Համբարձման լերանէն, որոյ երկայնութիւնն է չորս կանգուն, և լայնութիւնն նոյնչափ, և վանդակապատ պահեն. (Քանզի քարն կոխեալ ձախ ոտինն միայն կայ մնայ ՚ի սուրբ Համբարձման տեղւոջն՝ մինչև ցայսօր ժամանակի։) Եւ ՚ի նմա է Միհրապ՝ յոր մտեալ աղօթեն։ Եւ գոյ ՚ի նմա գերեզման մի. զորմէ ոչ կարացաք տեղեկանալ, բայց թուի ինձ՝ թէ Սա է գերեզման Զաքարիայ որդւոյ Բարաքեայ. Ղուկ. ԺԱ. 51. որ սպանաւ ՚ի մէջ Տաճարին և սեղանոյն։ Եւ կամ Աքարիասի որդւոյ Յովիդայեայ։

Եւ ՚ի ձախմէ տաճարիս կից պարսպին՝ առ

Հարաւ մերձ իրերաց իբր հինգ կանգնաւ հեռի 'ի միմեանց, մեծութեամբ և բարձրութբ հաւասար. գոյ կրկին գմբէթ քարաշէն, որք արտաքուստ դիւրաւ երևին 'ի Ճանապարհէն՝ որ գնայ 'ի Գեթսեմանի, կամ 'ի ձորն Յովսափաթու:

Ի ներքոյ գմբեթիցս գոյ տեղի մի 'ի ձև տան, և միով դրամբ ամրացեալ, և խորագոյն յոյժ, ընդ որ իջանէ 26 աստիճանաւ 'ի յատակն՝ ուր գոյ հանգոյն օրօրոցի քար իմն, որոյ մէջն փորեալ կայ իբր մարդաչափ. զայս կոչեն Պէշիկ Իսայէ. այսինքն օրօրոց Քրիստոսի: Սորա արտաքին երկայնութիւնն է կանգուն մի և 21 մասն, միջի երկայնութիւնն է կանգուն մի և 11 մասն, և թանձրութիւնն 4 մասն և կէս. արտաքին լայնութիւնն կանգուն մի և 9 մասն, և միջի լայնութիւնն կանգուն մի:

Այն տաճարի արևելեան դուռն՝ ընդ որ եմուտ Տէրն մեր յաւուրս քառասնօրեայ Գալըստեան, և ծաղկազարդին, 'ի վաղուց անտի քարուկրով ամրափակեալ կայ մինչև ցայսօր. որոյ 'ի յետոյս դրանն է կամար հոյակապ և սրահ գեղեցիկ, կառուցեալ 'ի վերայ երկուց կարմրագոյն քարեայ սեանց, յորոյ վերայ են կրկին հնաշէն սեներակք: Յաջմէ տեղւոյս առ հիւսիս իբր քարընկէց մի հեռի, գոյ և այլ գեղեցկակերտ գմբէթ մի, զորմէ ասեն թէ՝ Անդ դնիւր աթոռն Սողոմոնի արքային, ուր նկեալ յետ աղօթից բազմէր: Թուի ինձ՝ թէ վէմս այս՝ որ կայ 'ի տաճարին, է սեղան Դաւթի, որ էր 'ի

կալն Որնայի․ յորոյ վերայ եհան զողջակէզ։ Եւ առաքեաց Աստուած զհրեշտակ յԵրուսաղէմ սատակել զնա . . . և հրեշտակ Տեառն կայր ՚ի կալն Որնեայ Յեբուսացւոյ, համբարձ զաչս իւր Դաւիթ, և ետես զհրեշտակ Տեառն, զի կայր ՚ի մէջ երկնի և երկրի, և սուրն իւր ձըգեալ ՚ի ձեռին իւրում, և կարկառեալ ՚ի վերայ Երուսաղէմի։

Ապա զղջացաւ Դաւիթ, և ծերքն քուրձ ըզգեցան. անկան ՚ի վերայ երեսաց իւրեանց և հրեշտակ Տեառն ասէ ցԳադ, ասա՛ ցԴաւիթ. զի ելցէ և կանգնեսցէ զսեղան Տեառն ՚ի կալն Որնեայ Յեբուսացւոյ, և շինեաց Դաւիթ անդ սեղան Տեառն. և եհան զողջակէզս, և վասն փրկութեան, և կոչեաց առ Տէր. և լուաւ հըրով յերկնից նմա, ՚ի վերայ սեղանոյ ողջակիզին, և ծախեաց զողջակէզսն, և ասէ Տէր ցհրեշտակն դարձո՛ զսուսերդ ՚ի պատեանս. Ա. Մնաց. ԻԱ. 18։

Եւ յաղագս շինութեան տաճարին, պատուէր ետ Դաւիթ Սողոմոնի որդւոյ իւրում, և կոչեաց զՍողոմոն զորդի իւր, և պատուիրեաց նմա շինել զտուն Տեառն Աստուծոյ Իսրայէլի. և Դաւիթ պատրաստեաց զնիւթս տաճարին։ Եւ ինքն ետ զօրինակ տաճարին. «Ասէ արքայ և շինեցէ՛ք զսրբութիւնս Տեառն Աստուծոյ մերոյ. տանել ՚ի ներքս զՏապանակ ուխտին Տն. և զսպաս սրբութեանցն Աստուծոյ ՚ի տունն, զոր շինէք անուան Տեառն»։ Ա. Մնաց. ԻԲ. 6։ Անդ. ԻԸ. 11. 19։

Եւ սկսաւ Սողոմոն շինել զտուն Տեառն յԵ-

րուսաղէմ 'ի լերինն Ամուրհացւոցն, ուր երևեցաւ Տէր Դաւթի հօր նորա, 'ի տեղւոջ՝ յորում պատրաստեաց Դաւիթ 'ի կալն Ոռնեայ Յեբուսացւոյ. Բ. Մնաց. Գ. 1:

Եւ կատարեցաւ ամենայն գործն զոր արար Սողոմոն 'ի տուն Տեառն... հանել զՏապանակ ուխտին 'ի քաղաքէն Դաւթի, նա է Սիոն, և տարան 'ի ներքս Ղևտացիք զՏապանակ ուխտին Տեառն, 'ի տեղին իւր 'ի Դաբիր տանն. 'ի Սրբութիւնս սրբութեանց 'ի ներքոյ թևոց քերովբէից. Բ. Մնաց. Ե. 4. 7:



Դրունք գաւթին Սողոմոնեան տաճարին:

1. Արևելեան դուռն՝ որ կոչի պապըլ ռահմէ, այսինքն դուռն ողորմութեան. և ըստ ոմանց՝ դուռն ոսկեղէն. որ 'ի վաղ ժամանակաց քարուկրով ամրափակեալ կայ և մնայ:

Հարաւային դրունք:

2. Դուռն կոչի պապըլ մողարպէ, որ է մերձ տաճարին Սրբութիւն սրբութեանց:

3. Դուռն մեծ կից յաջմէ վերնոյն, որ կոչի պապըլ պըրակ: Ընդ որ գնայ 'ի ներքոյ տաճարին. առ որ իջանէ 30 աստիճանաւ. և է նոցա ուխտատեղի. քանզի կայ մերձ դրանն երկաթի անուր մի. զորմէ ասի թէ, մինչ եկն օրէնսդիրն նոցա 'ի տաճարն. անդ կապեաց զջորին. կամ

զկառս իւր՝ զոր մեծաւ յարգութեամբ համբուրեալ պատուեն ։

4. Դուռն փոքրիկ՝ որ կայ 'ի մէջ դատաստանին։

5. Դուռն որ կոչի պապըլ մահքամէ, այսինքն դատաստանին ։

6. Դուռն հին վերնոյն յաղթէ նորին, որ կոչի պապըլ Նաթրունէ, այսինքն Թաքեայի ։

7. Դուռն՝ որ 'ի յետուստ չէքէ կոչեցեալ բաղանեաց. որ կոչի պապըլ մաթհարէ. այսինքն լուացարանի կամ ապդէստի ։

8. Դուռն գեղեցիկ կոչեցեալն, որ է մերձ դրան չէքէ բաղանեաց. սա կոչի պապըլ սուք ըլխաթթանին, այսինքն բամբակի շուկայն. 10 աստիճանաւ ելանէ 'ի դուռն, և 10 աստիճանաւ առ գաւիթ տաճարին. Գործ. Գ. 1 ։

Արեւմտեան դրունք ։

9. Դուռն մեծ՝ որ կոչի պապըլ չէր ըլղուաթէլ ։

10. Դուռն մեծ երկաթի, որ կոչի պապըլ հատիտ ։

11. Դուռն որ է մերձ պալատին Պիղատոսի, սա կոչի պապըլ փարանձէ ըլղաւանէ. ընդ որ իջանէ բազում աստիճանօք, որոյ հանդէպ 'ի դաւթի անդ գոյ ուլթանկեան գմբէթ մի ։

Հիւսիսային դրունք ։

12. Դուռն մեծ՝ որ է 'ի ներքոյ կամարին 'ի յետուստ պալատին Պիղատոսի, սա կոչի պապըլ մաթրաքէ ։

13. Դուռն մեծ՝ որ է յաջմէ վերնոյն և հանդէպ փողոցի շուկայի Սիմոնի փարիսեցւոյն՝ որ կոչի պապըլ սուէյկայ։

14. Դուռն մեծ՝ որ է մերձ Պրոպատիկէ աւազանին, 'ի հնումն կոչէր դուռն հօտից. ընդ որ մուծանէին զողջակէզսն 'ի տաճարն. սա կոչի պապըլ սիթթի Մէրիէմ, այսինքն դուռն սուրբ Աստուածածնի։



Արժան համարիմ աստէն յիշել զՏապանակ ուխտին, թէ ո՞ւր իցէ և յո՞ր վայրի թագուցեալ։

Սոյն այսչափ ինչ տայ 'ի գիրս, Բ. Մակ. Բ. 5. «Որդ՝ եկն եհաս Երեմիա մարգարէ 'ի տեղի անդր, և անդ եգիտ այրս ամուրս անտառախիտս, զվրան ժամուն, և զՏապանակն կտակարանաց՝ և զսեղանն խնկոց անդ տարեալ դնէր 'ի ներքս, և զդրունսն ինքնին առ արկանէր»։ Իսկ ըստ մեկնչաց ասի, տարաւ 'ի Նոմբա յայնկոյս Յորդանանու՝ Թագոյց յանտառախիտ այրին։ Ի տեսութի սուրբ Գրոց, Գ. հատ. յեր. 394։ Յորմէ առնու Սէջն Պօղոս Պատրիարքն, և գրէ 'ի Ջանազանութե հինգ դարուց, Բ. հատ. յերես 459։ Իսկ Յայսմաւուր, Օգոստոս հինգ։ Իսկ 'ի գերելն Ասորւոց զԵրուսաղէմ, էառ Երեմիա մարգարէն զտապանակն, և տարեալ 'ի Սինայ, եդ 'ի վէմն 'ի մէջ երկուց լերանց, և այլն։ Յայս միտ խօսի և Գրիգոր Տաթևացին՝ Հարցմանց, յերես 345։

Յաղագս ուխտագնացութեան 'ի սուրբ Երուսաղէմ, վկայութեամբ Հին և Նոր Կտակարանաց սուրբ Գրոց ։

Ի բնական օրէնսն հրամայեաց Աստուած Աբրահամու ասելով, «Ե՛լ դու յերկրէ քումմէ, և յազգէ քումմէ, և 'ի տանէ հօր քո, և եկ յերկիր՝ զոր ցուցից քեզ»։ Ծննդ. ԺԲ. 1։

Եւ ելեալ Աբրահամ գնաց յերկիրն Աւետեաց, որ է Պաղեստին, կատարելով զհրամանն Տեառն. և կամեցաւ զենուլ զորդին իւր զԻսահակ վասն սիրոյն Աստուծոյ. Ծննդ. ԻԲ. 12։

Նոյն եկեալ Յակոբայ աստ, և տեսեալ զսանդուղս հաստատեալ յերկրէ յերկինս, հրեշտակք առ մեզ իջանէին և մարդիկ յերկինս ելանէին. ուստի ասէր Յակոբ, «Տէր է 'ի տեղւոջս յայսմիկ, և ես ոչ գիտէի։ Զահի հարաւ՝ և ասէ, ահեղ իմն է տեղիս այս, և ոչ է սա՝ եթէ ոչ տուն Աստուծոյ. և այս է Դուռն երկնից»։ Ծննդ. ԻԸ. 11 մինչև 20։

Ի դրական կամ 'ի գրաւորական օրէնսն՝ պատուիրեաց Աստուած Մովսէսի՝ երիցս 'ի տարւոջն, որպէս գրի՝ Բ. Օրինաց, ԺԶ. 16։

«Զերիս ժամանակս՝ 'ի տարւոջ յանդիման լիցի ամենայն արու քո առաջի Տեառն Աստուծոյ քո, 'ի տեղւոջն զոր ընտրեսցէ Տէր. 'ի տօնի Բաղարջակերացն. և 'ի տօնի Եօթներորդացն. և 'ի տօնի Տաղաւարահարացն, և ոչ երեւեսցիս առաջի Տեառն Աստուծոյ քում ունայնաձեռն»։

Նախ 'ի սելով, «Եւ եկեղեցացաւ ամե-

Ապա մեծ քան զտաճարն է աստ․ և ահա մեծ քան զՍողոմոն է աստ ։ Ահա որ ոք ցանկայ տեսանել և լսել զբանս իմաստութեան ճշմարտին Սողոմոնին Յիսուսի, եկեսցէ և տեսցէ զգործս Աստուծոյ՝ ուր գործեցան խորհուրդք Տնօրէնութեան, ո՛չ ըստ Եթովպացւոյն․ որ եկն 'ի լսել 'ի նմանէ զբանս, և տեսանել զպարեկարգեալ զգործս նորա․ Գ․ Թագ․ Ժ․ 1 ։ Այլ ըստ Ներքինւոյն՝ ընդունել զշնորհս և զհոգին Աստուծոյ ։



Ո՞րինչ օգուտ կայ Ուխտաւորաց գնալ յԵրուսաղէմ ։

Նախ՝ առ յարգելոյ՝ պատուելոյ, և փառաւորելոյ զսուրբ Տեղիսն Քրիստոսի․ զի մինչ արդարեւ մեք յայց երթալ Տնօրինական տեղեաց նորին՝ փառաւորեմք, փառաւորէ զմեզ Քրիստոս․ ըստ այնմ՝ զփառաւորիչս իմ փառաւորեցից․ Ա․ Թագ․ Բ․ 30 ։

Երկրորդ՝ առ 'ի ստանալ մեզ զշնորհս, որպէս պարգեւէ մեզ ուղղութիւն վարուց․ որով և քան զեւս առաւելեալ, և յաւելու 'ի մեզ զհոգեւոր փափագն և աշխոյժն գովութեան Աստուծոյ, և օրհներգութեան, և գոհութեան ։

Երրորդ՝ 'ի մերձենալն հաւատով և ջերմեռանդն սրտիւ, և արտասուահայց պաղատանօք պատուելով և յարգելով, յառնէ հոգի մեր 'ի մեռելութենէ մեղաց ։

Բանզի եթէ զի Եղիսէի մարգարէին յարոյց զմեռեալն իսկ և իսկ. Դ. Թագ. ԺԳ. 21։ Որչափ քանի՞ առաւել շնորհն սուրբ ոսկերացս Քրիստոսի յարուցանէ զհոգիս մեր ՚ի մեռելութենէ մեղաց։

Այն այր պատգամաւոր զոր ետես մարգարէն Ամովս, "Եւ ահա այր մի կայր ՚ի վերայ Անդամանդեայ պարսպի, և ՚ի ձեռին իւրում Անդամանդ„. այսօրինակն ցուցանէր. Ամով. Է. 7։

Այն է Քրիստոս որդին Աստուծոյ, որ եկն յերկնից ՚ի յերկիր. և կատարեաց զանձնաւորեալ օրէնութեան և մարգարէութեան խորհուրդն ՚ի սուրբ Երուսաղէմ. պարիսպն է նորին անարինական սուրբ Տեղւոյն. իսկ Անդամանդն է շնորհքն, զոր ունի ՚ի ձեռին իւրում, և բաշխանէ իւրաքանչիւրոց՝ որք հաւատան, և ջերմեռանդն հոգւոյ փափագանօք զինքն առ նա, յորմէ ընդունին զշնորհս՝ յուղղութիւն փառաց և գործոց բարեաց, և ՚ի թողութիւն մեղաց. և առ ՚ի արժանի դառնալ վերնոյն Երուսաղէմի երկնից սուրբ Արքայութեան, որում արժանի արասցէ զամենեսեան։



## Յաղագս Լիւդդայ, որ է հանդէպ Ռէմլէա՝ իբր կէս ժամու հեռի։

Աստ առաքեալն Պետրոս յարոյց զութամեայ անդամալոյծն Ենեա. «Էջ Պետրոս առ սուրբսն որք բնակեալ էին ՚ի Լիւդդիայ». Գործ. Թ. 36։

Սուրբ գոյ կառուցեալ եկեղեցի մի հնաշէն յանուն սրբոյն Գէորգայ, որոյ կէսն մզկիթ առարեալ են այլազգիք, և կէսն է ՚ի ձեռս Յունաց. զորմէ ասեն՝ թէ աստ ծնաւ սուրբն Գէորգ, և ոմանք թէ՝ աստ մարտիրոսացաւ. զոր և Մարինոս, ամենայն պատմիչք ասեն՝ թէ ՚ի Լիւդդայ մարտիրոսացաւ սուրբն. այլ տառապանսն երեւի գրեալն ՚ի Վարս սրբոց Զ. հոռոր.

« Սուրբ Գէորգ քաջ նահատակն Քրիստոսի
» էր հայրենեօք յաշխարհէն Գամրաց՝ այսինքն
» Կապադովկացւոց. ՚ի սահմանաց Մաժակայ կե-
» սարիա կոչեցելոյ, զաւակ բարեպաշտ ծնողաց
» յազատ տանէ։ Հայր նորա Գերոնտիոս անուն
» արեամբ նահատակեալ. իսկ մայրն որդու-
» թեամբ փախճանեալ ՚ի Պաղեստին, ուր էին
» նորա կալուածք բազում. վասն որոյ և ինքն
» Գէորգ ըստ գրելոյ Անդրէի Կրետացւոյ՝ ծնըն-
» դեամբ էր Կապադովկացի, և սնընդեամբ Պա-
» ղեստինացի....։ Յամի Տեառն 303, յամսեանն
» Ապրիլի 23, յաւուր Ուրբաթու, յեօթներորդ
» ժամու տանջեալ՝ զկնի զատկին նահատակե-
» ցաւ ՚ի կեսարիա Պաղեստինոյ։ (Այն է Լուդի
» Դայնէրի, որ երկատասան ժամու հեռի է ՚ի
» Ռէմլէու։) Եւ ըստ պատուիրելոյ սրբոյն Գէ-

» որդւոյ՝ ծառայ Նորին Գասիլիկոսութեան բարձեալ
» զմարմին Նորա տարաւ յերկիրն Գաղատացւոց,
» 'ի քաղաքն Դիոսպոլիս, այն է Լիւդիա. կամ
» ըստ այլոց 'ի փոքրն Հռովմա, որ և Թոմաշու.
» ռամկական Ռէնկէ: Սրբանօր 'ի վանս Ասորւոց
» ցուցեալ լինէին նշխարք սորին մինչև յերեք
» տասաներորդ դարս. ուր կայ մինչև ցայսօր
» եկեղեցի Հայոց, յանուն սորին Գէորգայ »:

Այն յիշեալ Ասորւոց վանքն է մերձ սուրբ Գէորգայ վանից մերոց՝ 'ի կողմն արևմտեան. և է այժմ օծառանոց, այսինքն ստղոնխանոյ. ո-րոյ կէսն Ասորւոց է և կէսն Յունաց:



Յաղագս սրբոյ Երուսաղէմի:

Ի Ռէմլէէ մինչ 'ի սուրբ Երուսաղէմ հինգ ժամ է:

Բայց յելանելն տէրունական Ուխտաւորաց 'ի Ռէմլէէ՝ պարտին յամենայն կուսէ ըզ-գոյշ և զգաստ լինել, և 'ի ճանապարհին երբեք ոչ բաժանիլ 'ի միմեանց: Նա և 'ի պատրաստի ունել քանի մի դրամ՝ գուցէ պահանջողք պա-տահիցին, և կամ ամանաւ ջուր. նաւթողաց՝ պարգևս տալի սիրով, և ոչ աղաղակաւ՝ կամ անարգանօք:

Անտի մինչ 'ի գիւղն Քըրղոյի երկու ժամ է. որոյ բնակիչքն են ֆէլլահք:

Անտի մինչ 'ի Լաթրուն գիւղն մի ժամ է: Ոմն՝ թէ Աստի էր աջակողմեան աւազակն Դի-

մաս, որ 'ի խաչին ասաց առ Քրիստոս. « Յիշեսջիր զիս Տէր, յորժամ գայցես արքայութեամբ քով։ Եւ նա ասէ ցնա, այսօր ընդ իս իցես 'ի Դրախտին »։ Ղուկ. իգ. 42։

Եւ 'ի ձախակողմն ամրոցին տեսանի հնաշէն մզկիթ մի, որ էր յառաջագոյն եկեղեցի յանուն Մակաբայեցւոց՝ Եղիազարու, Շամունեայ, և եօթն որդւոցն, որք նահատակեցան յԱնտիոքոսէ՝ յԱնտիոք քաղաքի, 163 ամօք նախ քան ըզՔրիստոս. Բ. Մակ. Զ. 18. և Է. մինչև ցվերջն։

Աստի երեք ժամ է մինչ 'ի գիւղն, որ ասի Ղըրեէթ ըլ-ահնապ, այսինքն աւան խաղողոյ. որ այժմ կոչի Աբուղուշ. որ երբեմն կոչէր [illegible]. Ի պատմ. Հաննա, յէր. 80։ Ի սոյն հասարակ ճանապարհի գեղջն Աբուղուշի, կոչի վատ Ալի, վասն լինելոյ գերեզման Ալիի ուրումն՝ 'ի կէս ճանապարհին 'ի ներքոյ մեծագոյն կաղնի ծառոյն. զի այս է սովորական ճանապարհն։ Եւ ճանապարհըն՝ որ գնոյ 'ի ձիով, այն է գիւղն Ուղտապանոց. ասի վատ Սուլման, այսինքն ձոր Սիւլէյմանի. ընդ այս ճանապարհ Ուխտաւորք երթևեկութիւն ոչ առնեն, զի հեռի անկանի։

Ըստ աւանդութեան Լատինաց ասի, թէ սա է Անաթովթ քաղաք Երեմիայ մարգարէի. Երեմ. Ա. 1։ Ի յեզր գեղջն յաջմէ ճանապարհին գոյ հին հոյակապ եկեղեցի մի, որոյ առաստաղն և որմն աւերեալ կան։ Աստի խոտորնակի ճանապարհաւ գնոյ 'ի ձիով, 'ի կողմն արևելից նորին՝ իբր միով ժամաւ հեռի է Արեմաթ գիւղն Սա-

մուէլի մարգարէին, որ է 'ի կատարս լերինն. և տեսանի ծովն. ուր գոյր վանք 'ի հնումն, որ ունի տակաւին բազում կամարակապ սենեակս, և եկեղեցի՝ յորում է գերեզման Սամուէլի. բայց 'ի բազում ժամանակաց հետէ մզկիթ արարեալ են, որոյ բնակիչքն են այլազգք: Եւ 'ի ներքոյ գեղջն 'ի կողմն արևմտից գոյ աղբիւր մի ցուրտ և բարեհամ: Բայց յԱպու-Ղօշ գեղջէ ուղիղ ճանապարհաւ գայ 'ի կամուրջ գիւղն, որ կոչի Քալօ՛նէ, և 'ի գլուխ կամրջին գոյ աւերակ եկեղեցի մի մեծամեծ քարամբք շինեալ: Ի ձախմէ աւերակին գոյ ցուրտ և բարեհամ ջուր. բայց անծանօթ տարրական ճանապարհորդաց:

Անտի իբր կէս ժամ է Լիֆթոյ գիւղն, ուր են աղբիւր և պարտէզք:

Անտի իջանէ զառ 'ի վայր, և ելանէ զառ 'ի վեր, և սակաւ մի յառաջ խաղացեալ իբր կէս ժամ երևի Երուսաղէմ քաղաքն, յաջմէ ճանապարհին տեսանի խաչավանքն 'ի մէջ ձորակին, և է 'ի ձեռս Յունաց: Եւ 'ի ձախմէ է գմբէթ մի այլազգեաց, որ կոչի հին Դատարան. և յաջմէ է Գեհոն, ուր օծին զՍողոմոն Թագաւոր. Գ. Թագ. Ա. 38: Եւ այժմ է գերեզմանատուն այլազգեաց; և 'ի նմա մեծագոյն աւազան մի. և անցեալ անտի գայ ուղղակի 'ի դուռն հայր Աբրահամու, որ ըստ Արաբացւոց կոչի պապըլ խալիլ: զոր մեք ասեմք Եաֆայի դուռն:

Արտաքոյ պարսպին՝ առաջի դրանն է մաքսատուն և որճանոց:

Ի մտանելն ընդ դուռն քաղաքին՝ սակաւ յա-

ուալ խաղացեալ, ճանապարհն որ 'ի ձախմէ՝ գը-նայ 'ի վանս Լատինաց և Խփտաց որ յանուն սուրբ Գէորգայ: Այլ ուղղակի ճանապարհն խ-ջանէ 'ի վաճառանոցն, և գնայ 'ի սուրբ Յա-րութիւնն:

Իսկ յաջմէ է պատնէշ և՝ ամրոցն Դաւթի, ո-րոյ հանդէպ դրանն է նորաշէն ժողովարանն Անգղիացւոց, որ շինեցաւ յամի Տեառն 1848:

Յաջմէ դրան ամրոցին՝ է դուռն ձմերա-նոցին՝ (ՂՇԼԼայն): Այլ 'ի ձախմէ բնակութիւնք ազգին Հայոց: Գնալով սակաւ մի՝ տեսանի 'ի վե-րայ պողոտայիս կամար մի, յորոյ վերայ կառու-ցեալ կայ եկեղանատուն սուրբ Վանիցս:

Անցեալ 'ի ներքուստ այն կամարիս 'ի ձախ-մէ է Աւագ դուռն սուրբ Յակոբայ վանից. գեղեցկաշէն կամարակապ, յաջմէ և յահեկէ նորին խորանարդ անկիւնացեալ. և դուռն հա-մակ երկաթեայ, և 'ի ճակատ դրան գիր 'ի լե-զու Արաբացւոց, զոր շինեալ է Սուլթանն Եգիպտոսի՝ որ 'ի ՌՕՀ Թուականին Տաճկաց, և արգելու զամենայն վաղեմի հարստահարու-թիւնսն 'ի Վանիցս սուրբ Յակոբայ. և կնքէ զբան իւր յանէծս, որ ոք նորոգեսցէ զայս ա-մենայն արգիլեալ հարստահարութիւնսն, անի-ծեալ լիցի յԱստուծոյ:

Հանդէպ դրանն Վանից են պարտէզք. և շահլըի, և կամարն՝ որ առ հարաւ 'ի վերայ պողո-տային, է Նորակերտ. հայակաց մեհարան կամ Պատրիարքարան, զոր առորագրեցաք այլուր:

Արդ՝ 'ի մտանելն ընդ դուռն, որոյ յետոյն

'ի ձախմէ՝ է սենեակ գանձապանին, և բաղնոց, պարտիզպանին՝ ակլի, յորում նաւթին խառնիճիս. առ ըն-թեր նորին ևս բաղնոց, և ջրոյ շէղին, յորմէ ըմպին երթևեկք։ Իսկ 'ի ձախմէ նորին՝ է մեծ փայտեայ դուռն՝ որ մտանէ յարևելս 'ի գաւիթ Եկեղեցւոյն սրբոյ Յակոբեանց. բայց ուղղակի գնայ առ Հարաւ մինչ 'ի յանկիւնն, անտի դառ-նայ ընդ արևելս 'ի մեծ գաւիթն. դուռն որ 'ի ձախմէ՝ մտանէ 'ի գաւիթ սուրբ Էջմիածնի. իսկ յաջմէ գնայ 'ի Հոգետունն, որ է լայն և ընդ-արձակ տեղի, ուր իջանեն աշխարհականն Ուխ-տաւորք ըստ սովորութեանն, մինչև պատրաս-տեսցի իւրաքանչիւրոց յարմար սենեակ։

Այլոց ոմանք 'ի լսել զանուն Հոգետանն՝ խորշին և զայթակղին, մի թէ անդ միայն և եթ իցէ Հո-գետունն, իսկ միւս սենեակք ո՛չ. ո՛չ ապաքէն բոլոր մենաստանս է Հոգետուն։ Այո՛ սակայն նախնիք մեր ասելով Հոգետունն իմանան տուն հոգնածի՝ կամ աշխատողի. յորում Ուխտաւորք հանգիստ առնուն 'ի հասանել անդ նոցա 'ի մի Աթոռս։ Իսկ կամ տուն մեզ իմանալ թէ՝ այս է տուն Հո-գևոր և ոչ տանց մարմնաւոր՝ ըստ աշխարհիս, ևս և տուն մեզ յիշել զհոգիս մեր, որ մեղօք մահա-ցան. իսկ անմահ բնութիւնն եկն յաշխարհս, բնութեամբ մերով մեռաւ 'ի մերոց խաչին, և մեռոյց զմեղս. և յարութեամբ իւրով զՅա-րութիւն մեզ պարգևեաց՝ 'ի հոգի և 'ի մարմ-նի։ Այս սիրելիք Աստուծոյ՝ մի տրտմեսցուք և մի խորշեսցուք յանուանէ Հոգետանս. ուր սակաւ ինչ մի ունիմք հանգչել իբրև զհիւր. որ՝

ոյ. Սարկաւագն ասէ 'ի ձայն՝ եւ նա խաղաղ". Վարդապետն, Օրհնութիւն և փառք. փոխանորդացն երգէ Շարականն. դէ. Որ էին յէութեան. Սկար-դապետան խնկարկէ սուրբ Դպրապետին, և սուրբ Մակարայ, և այլոց կարգաւ. և ապա զգուարճա-ւորն 'ի Սարկաւագն: Այս համառօտաբար ծա-նուցանէ զհարկաւորն հետի լինել յամենայն անպարապելոյս վարուց. պատարագանել զանձինս խոս-տովանութեանց՝ մաքրութեանց՝ և աղօթից՝ առ 'ի ընդունակ լինել շնորհացն Քրիստոսի, և Տնօրինական Սրբազան Տեղեացն:

Ի յաւուրս ծանուցման 'ի ծանօթս անկեալ ար-տաւուրց քան զ սուրբ Դպրապետիր յաւելու, որ է որդին Զեբեդեայ մեծ առաքեալն Յակոբոս, եղբայրն Յովհաննու աւետարանչին, զոր գլխա-տեաց Հերովդէս Ագրիպպաս չորրորդապետն, 'ի Կեսարիայ Պաղեստինոյ՝ որ է Ջաղաւն ցուցեալ. վերջ ժամանս հետոյ 'ի Յոպպէս, յամի Տեառն 42 կամ 43. Գործ. ԺԲ. 2: Իւ սորան զՅակոբոս զեղբայրն Յովհաննու առաք. Ի Վարս սրբոց, Ժ. հատոր. յերես 208. 304: Յայսմաւուրք, Փետր. 22. Դեկ. 28: Որոյ պատուական և սուրբ Գլուխն պահանջեալ բերաւ առաջի սուրբ Աստուածածնին, Յովհան-նու աւետարանչին, և Տեառն եղբօր Յակոբայ արդարոյն, զոր առեալ ձեռօք իսկ իւրեանց ամ-փոփեցին 'ի տեղւոջն յայնմիկ, որ վերջերին մշ-տավառ կանթեղօք՝ և միով աշտանակաւ պատ-ուի ընդ տիւ և ընդ գիշեր:

Իւ յետ կատարելոյ Տէրունական Ուխտաւո-րաց զուխտս և զերկրպագութիւն իւրեանց, եր-

Աւագ խորանն է յանուն սրբոյն Ստեփաննոսի, յաջակողմեանն՝ սուրբ Լուսաւորչի, 'ի հիւսիսակողմն առ ընթեր նորին սուրբ Աւազանն. 'ի յանկեան գոյ դուռն մի՝ որ ելանէ 'ի մոմատունն. և 'ի ձախմէ է սրբոյն Կիւրղի աւազանն, յորում մկրտեաց հարիւր հազար անձինս, յաւուր Երևման սրբոյ Խաչին. և մերձ նմա է իւղատունն:

Անտի գոյ 'ի մեծ հրաշալագործ եկեղեցին, որոյ երկայնութիւնն 73 ոտնաչափ, և լայնութիւնն 56: Որոյ աջակողմեան խորանն է յանուն սրբոյ Կարապետին. յորոյ վերայ է սրբոյ առաքելոյն Պետրոսի խորանն:

Աւագ խորանն է յանուն սրբոյն Յակոբայ Տեառն եղբայր կոչեցելոյ: Քանզի մարմին սրբոյն Յակոբայ Առաքելոյն ամփոփեալ կայ 'ի ներքոյ հրաշակառոյց Աւագ խորանին. զի յետ համբառնալոյն Քրիստոսի յերկինս՝ սա նստաւ յԱթոռն Երուսաղէմի ամս 20 կամ 30. եղև կատարումն սորա՝ յամի Տեառն 60. յերեսներորդ ամի Եպիսկոպոսութեանն յաւուր զատկի, 'ի 25 մարտի: Որոյ Աթոռն յաւէտ մշտավառ կանթեղիւ միով պատուի:

Քանզի սրտմտեալ Հրէից վասն քարոզելոյ նորա զՅիսուս Քրիստոս, դրոհ տուեալ 'ի վերայ սորայն, արկին զնա յաշտարակէ անտի 'ի վայր, ուր և անդէն տափանաւ Թափչի հարեալ զգլուխ Երանելւոյն՝ սպանին զնա. զի մի լուիցեն զքարոզսն նորա՝ թէ Յիսուս կայ ընդ աջմէ Հօր 'ի յերկինս, և գալոց է միւսանգամ՝

փառօք Հօր ընդ ամպս երկնից, առ 'ի դատել զազգս մարդկան:

Ձախակողմեան խորանն է յանուն սուրբ Աստուածածնին, յորոյ վերայ է խորան յանուն սուրբ առաքելոյն Պօղոսի. և 'ի Վերնատունն է կրկին խորան, յաջակողմեանն է Պայծառակերպութեան, և 'ի ձախակողմեանն Ընթրեաց:

Եկեղեցիս սրբոց Ցակոբեանց կառուցեալ կայ 'ի վերայ քառակուսի քարից սեանց. և չորից կողմանց սրմքն՝ են յախճապակեայ երկու կանգնաչափ, յորոց վերայ կարգ մի պատկեր սրբոց, 'ի վերայ սոյն առաջնոյ կարգին բաւիղք ոսկեզօծ և ճարմանդաւոր, և կանթեղք: Նա 'ի վերայ բաւիղաց կարգ մի ևս պատկեր. յորոց վերայ բաւիղք վերստին՝ գրեթէ ամենայն սրբոց և խորհրդոց Տնօրէնութեան սուրբ պատկերք գը-տանին 'ի սմա, որ և ոչ գտանի ուրեք այնպիսի պատկերազարդ եկեղեցի. և կաթուղիկէն գըմ-բէթեայ՝ մեծամեծ լուսամոք, նոյնպէս և 'ի վերայ քառակուսի սեանց, 'ի չորեսին կողմանս պատկերազարդ մինչև 'ի խոյակսն, և երկու կանգնաչափ 'ի ներքոյ պատկերաց մինչ 'ի յատակն յախճապակեայ:

Ի մէջ գմբեթին բոլորշի երկաթեայ ճաղ դեղաղօծ և ոսկեզօծ, յորմէ կախին կանթեղք, յորոց վերայ մոմակալք բազումք, զորս լուցանեն յաւուրս հանդիսից մեծաց: Նա յեկեղեցւոյ գոն 25 կանթեղք մշտավառք. և 300 կանթեղք ևս աւելի գոն 'ի նմա:

Օրինակ նամակի Եղիազար սրբազան կաթողիկոսի և պատրիարքի սրբոյ Երուսաղէմի առ Կոստանդնուպօլսոյ Արգոյ Իշխանապետս և Ամիրայս և առհասարակ ժողովրդոց:

Լուսապատիւ և Աստուածամեծար, հրաշապարոյր և սքանչելապայծառ, գերահռչակ և վեհափառ. աստուածակիր և լուսապատար սուրբ քաղաքն Երուսաղէմ, և ամենայն սուրբ և աստուածահաս տնօրինականքն Քրիստոսի Աստուծոյ մերոյ:

Նախ՝ սուրբ Նազարէթն, ուր Գաբրիէլ հրեշտակապետն զաւետիսն ետ սրբոյ կուսին Մարիամու, ուր և յղացաւ զբանն Աստուած. գերապատիւ սուրբ Այրն՝ որ 'ի քաղաքն Բեթղեհէմ, ուր ծնաւ Էմմանուէլն Փրկիչ. Աստուածընկալ սուրբ Մսուրն, ուր ընծայեցաւ Յիսուս. Մեղսաքաւիչ սուրբ Յորդանան, ուր մկրտեցաւ Փրկիչն մեր Յիսուս: Լուսաճառագեալ սուրբ Լեառն Թաբօր, ուր պայծառակերպեցաւ Տէրն մեր Քրիստոս: Նախապատուեալ խորհրդական Վերնատունն, որ 'ի սուրբ Լեառն Սիոն, ուր լուացջ զոտս աշակերտացն Քրիստոս. և Հոգին սուրբ Աստուած էջ անդ, և լցոյց զանազան շնորհօք սուրբ զառաքեալսն: Սարսափելի սուրբ Գողգոթայ. ուր զենաւ անմահ գառն Աստուծոյ: Կենսատու սուրբ Գերեզմանն, ուր եդաւ Աստուածացեալ մարմինն: Փառաւոր տաճար սուրբ Յարութեանն, որ պատուելին է ամենայն ազգաց քրիստոնէից:

Ըզգենազաստաւակ սուրբ Լեառն Ձիթենեաց, ուս-
տի համբարձաւ Տէրն մեր Քրիստոս։ Ըմենօրհ-
նեալ սուրբ Գերեզմանն, ուր եդաւ մաքուր
մարմինն սուրբ կուսին Մարիամու Աստուածած-
նին։ Լուսաւորիչ վէմն դրան սրբոյ Գերեզմանին
Տեառն մերոյ, որ կայ 'ի սուրբ Փրկչայ վանսն։
Սրբազան տաճար եկեղեցի սրբոյ Հրեշտակապետ-
ացն, ուր բանդարկեցաւ Տէրն մեր Քրիստոս։
Ըսպերլաշնորհ տաճարն սուրբ Յակոբ, որ է
Աթոռ եղբօր Տեառն Յակոբայ։ Իսկ աստուա-
ծաբերեալ զամբարանն արեամբ մածեալ Գլխա-
տի սրբոյն Յակոբայ մեծի առաքելոյն որդւոյն
Զեբեդեայ, որ կայ 'ի նմին։ Իսկ այլ միւսղէն
օրհնեալ անօրինականացն Քրիստոսի Աստուծոյ
մերոյ՝ ծառայ և սպասաւոր Եղիազար կաթու-
ղիկոս ամենայն Հայոց, և Պատրիարք սրբոյ Ե-
րուսաղէմի։ Յորմէ ժամանեալ հասցէ Աղօթք
առաքելական, և օրհնութիւն աստուածային 'ի
տիրաշէն և Քրիստոսախնամ մայրաքաղաքն Կոս-
տանդնուպօլիս, 'ի վերայ ամենայն քրիստոնէից
հայկազնեայ. մանաւանդ 'ի վերայ հարազատ և
հոգևոր սիրոյ նորոյ կապակցեալ որդեկի մե-
րում Տէր Յովհաննէս արք եպիսկոպոսին. և բա
կարգի քահանայից և բոլոր պաշտօնէից իշխանաց և
իշխանազնեայ, և ղօղփաթասորացն. և առա-
ւել ես 'ի վերայ հաւատարիմ վէքիլաց և մեծ-
րիմ գործակալաց սրբոյ Երուսաղէմի երկոտա-
սան Թուով ընտրեալ մեծարանաց. և նոցին
հետևեալ համակամ և միաբանորհուրդ սիրե-
լեաց մերոց 'ի Տէր խնդալ, ամէն։

Այն օրհնութիւն աստուածային և խնամք ամենակալ Արարչին, որ էջն և հանգեաւ ՚ի վերայ որբոց Երուսաղէմի, և լցոյց զնոսա եօթնազան շնորհիւ, իջցէ և հանգիցէ ՚ի վերայ տանց և բնակութեանց ձերոց։ Այլ և սուրբ Նազարէթիւն՝ որ ծաղիկ թարգմանի, ծաղկեա՛լ լիջիք դուք հոգւով և մարմնով ամենայն բարեմասնական առաքինութեամբ։ Եւ սուրբ Ծննդեամբն՝ ծնեա՛լ լիջիք վերստին ՚ի յոյսն կենդանի։ Եւ անբանից սուրբ Մորիւն՝ ՚ի տեղան Հօրն երկնաւորի բազմեսջիք։ Եւ սուրբ Յորդանանաւն՝ լուացեա՛լ լիջիք յամենայն աղտոյ մեղաց։ Եւ սուրբ Թափօրական լերամբն՝ բարձրասջիք յիմանալի լեառն վերին։ Եւ սուրբ Վերնատանաւն՝ որ ՚ի սուրբ Սիոն, վերին Սիոնի և Երուսաղէմի ժառանգորդ լիջիք յաւիտեան ; ամէն։

Իսկ ՚ի տօնի հրաշափառ Ծննդեան և աստուածայայտնութեանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ զշնորհաբաշխութիւն սրբալոյս Մեռոնին, զոր փութացաք կատարել աստանօր. ոչ այլ ինչ իրաց կարծեաց վասն, այլ միայն թէ վասն հրաշալի խորհրդոյ։ Քանզի ձիթենի ծառն այն՝ յորում արկեալ ձաղկեցաւ Տէրն մեր Քրիստոս ՚ի սուրբ Հրեշտակապետի վանսն. ոչ ոք լուաւ, և ոչ ոք ետես յօրէն աստուածայայտնութեան Տեառն մերոյ մինչև ցայսօր, եթէ հանեալ եղև ՚ի պտղոյն ձէթ իւղոյ, սակս նուաղութեան պտղոյ ծառոյն։ Իսկ յայսմ ամի՝ այնքան առդիւնացեալ շնորհիւ Տեառն՝ մինչ զի ձգեալ ձէ-

Թըն՝ ոչ միայն 'ի Նիւթ սրբալոյս Մեռոնի բա-
ւականացաւ , այլ և 'ի խնդրոյ Լատինացն Հռո-
մայ Պապին շնորհ առաքեցաւ . և բազում ևս
քան զայնս 'ի տեղւոջ խորում պահեալ կայ ։
Որոյ շնորհացն և օրհնութեանցն զձեզ զամե-
նեսեանդ ևս մանաւանդ արասցէ Քրիստոս
Աստուած մեր ծնողովք և համայն ննջեցելովք
ձերովք , ամէն ։

Գրեցաւ Օրհնութեան Գիրս 'ի սուրբ Երուսաղէմ ։

Ի Թուին Հայոց՝ ՌՃԺԵ ·
'ի Յունվարի 23 ։



Եւ յետ մահուան Տ. Յակոբայ սրբազան կաթողիկոսի սրբոյ Էջմիածնի, գիր աղաչանաց առաքեն միաբանքն առ Տ. Եղիազար սրբազան կաթողիկոս և Պատրիարքն սրբոյ Երուսաղէմի, և խնդրեն զգալուստ նորին 'ի Գահն աթոռ Էջմիածնի։

Օրինակ աղերսանաց նամակի նոցին ։

Աստուածապետական բանական անդաստանաց՝ բարեխնամ մշակիդ, որդւոյ միածնի Յիսուսի Քրիստոսի անձառ արեամբ գնելոյս. բիւրեղափայլ պսակիդ՝ Հոգւոյն ճշմարտի նմին փառաւորեալ վերստին լուսաւորելոյս՝ արթնական դիտողիդ՝ և սրբոյ Երրորդութեանն հաստչին համայնից՝ կենդանագոյն ընտրեալ Հոգևոր Հովուիդ, ազնուագութ սրբոյ Հօրդ տարակուսեալ որդեացս, և բարձրափայլ Գլխոյդ մեր վհատելոցս սրբազան կաթողիկոսի Տ. Եղիազարու՝ առաթուր անկեալ և յերկիր մածեալ, արտամագին դիմօք, և վհատեալ սրտիւք, կականաբարձր ձայնիւք, և արտասուաթոր աչօք՝ զոտիւք Տն̃նդ փարելով, և զերկնաչու գարշապարդ սրբոյ Հօրդ համբուրելով՝ զՔրիստոսակիր Անձնդ Ողջունեմք 'ի Տէր ։

Միանգամայն ամենայն արևելականացս Հայկական Եկեղեցեաց՝ եպիսկոպոսք, վարդապետք, քահանայք, վանականք, աշխարհականք, և ամենայն ժողովրդականք՝ հաւատացեալք 'ի Քրիստոս ։

Զայս ինչ երանելութեան քումդ վեհիմաստ խոհեմութեան յայտ առնեմք, զի ըստ հաւա-

սակայն կարգի · և ըստ վերնական անհեղաղայն հրամանի · բարձրագահ որբազան Հայրն մեր Յակոբ կաթողիկոս հանդերձ Տէրն՝ պատկառեալ 'ի մէնջ յաւելեալ առ հարսն իւր՝ որպէս յայս է Վեհիդ մեր, և եթող մեզ անհնարին աղէտս տարակուսանաց, ուստի և մեք մթնագաստ, և խաւար թանձրամած, զմբաղ անհնարին և յուսահատութեան բնաւին զետեղեալ՝ զմեօք մերձ էին լքանել · իսկ մեր մտաբերեալ զբանն Դաւթեան, որ թէպէտ ոչ կարէր մխիթարել · յիշեցաք զԱստուած, և ուրախ եղաք, և զա-հութիւնս բազում զնմանէ մատուցաք · այլ և այսուհետ յԱստուած ցնծասցուք, հոգի առեալ կենդանացաք · զարթուցեալք 'ի քնոյ՝ զՏէր օգ-նական գտաք · և ճշմարտապէս ծանուցեալ՝ ըզ-Տեառնէ գոհացաք · քանզի խրատեաց՝ և 'ի մահ ոչ մատնեաց · վասն զի զայն թէպէտ 'ի մէնջ ե-առ, այլ սակայն զՎեհդ յառաջագոյն իսկ 'ի նոյն ընտրեաց ։

Իսկ արդ՝ որովհետև դու Հայր մեր՝ ո՛վ Հայր պատուական, որովհետև Աստուած զայս անօ-րինեաց · վասն որոյ առաջի Տեառն անկեալ աղաչեմք կողկողագին դիմօք, և մեծաւ յուսով. հաւանեա՛ զմեզ յանդաստանի կամաց քոց · և առ ջուրս իմաստութեան քո ա՛ծ զմեզ, և յառաջե-բայց աստուածատուր վտակացդ արբ՛ զմեզ · քանզի զամենայն ինչ զոր արար Աստուած՝ բա-րի է, բայց 'ի ժամանակի իւրում · ահա ժամ և ժամանակ և օր նորին · ուստի համարձակաբար ասեմք · ահա մարմին և ոսկերք քո եմք ։ Ի Բեթ-

ընդդէմ Թաղնաքար օծու Դաւիթ արքայն, սա-
կայն Աստուած 'ի Թագաւորութիւն բոլորից
ազգաց էած զնա. որ զայն ինչ 'ի հինան յորդ-
նեաց. Նոյնպէս և Աստուած զմեհս 'ի սոյն յար-
գարեալ անօրինեաց այժմ. զերկուսն որդայն
Գրիգորի Հօրն մերոյ Լուսաւորչին, առ քեզ
բարեխօս արկանելով աղաչեմք. զի սուրբ Աթո-
ռըս և զանեղծ նորին նարօդել՝ հայցեմք. և թէ-
պէտ մեղանս ինչ 'ի ժամանակի առ քեզ յայտ-
նեալ երևեցան, ըստ անտառակին և մեք առ քեզ
դոչեմք. մեղաք յերկինս և առաջի քո. վասն ո-
րոյ և Տէրդ զԹագեալ Թողցես մեզ. Նմանե-
լով Տեառնդ քում բարւոյ և Ճշմարտի։

Դարձեալ աղաչեմք 'ի սուրբ Հօրէդ. զի մի՛
ընդ վայր հարցես զմեզ. այլ խոնարհեալ յա-
զաչանս ծառայից քոց, ենկեալ գիցես զսուրբ
զարշապարդ քո 'ի վերայ մեր գլխոյ, պահելով
'ի խաղաղութեան զսուրբ Աթոռս զայս. և մա-
նաւանդ զերկուս զսուրբ Աթոռս, որք են ա-
պաւէնք մեր. Թէպէտ յանդգնութիւն իմն ե-
րևի առաջին մեր. այլ Ճշմարտութիւն հաւատա-
րիմ ծառայից յայտնեալ երևի 'ի խնդիրս մեր.
որպէս արար զերկոտասանն մի, և զմիջնորմն ցան-
կոյն քակեաց. և որ կայրն մեզ հակառակ, զայն
'ի միջոյ եբարձ. և արար խաղաղութիւն ա-
րեամբ իւրով. ըստ նմին սարասաք և զայս անձ-
նայն զքէն աւր. Իսկ արդ՝ զինչ արդեօք առ-
ջեւ լիցի, նմանել մեծի Տեառն՝ ծառայից մե-
ծի. Այս ժամ է խորտակման ազգիս Հայոց, և
խանգարումն և լուծումն քրիստոնէական կար-

զէս յարկածից. և 'ի թուենից մահաբեր օձին. զոր 'ի ձեռն արքանեկաց նորին՝ յերկուս սուրբ Աթոռս յեղյեղեալ նիւթեցան. ոչ որք կարող է զայս 'ի բարին և 'ի կեանս փոխարկել, եթէ ոչ Վեհդ պատուական. քանզի և զանուն Տեառնըդ զայն յայտնաբանէ. վասն որոյ և մեք յուսացեալք, և երդուեալ 'ի յԱստուած Հայր. և 'ի հեղումն արեան Յիսուսի Քրիստոսի. և յօծութիւն ամենասուրբ Հոգւոյն Ճշմարտի, խոնարհեալ համբուրեմք զոտսդ Գարշապարդ, և հայցեմք՝ զի խոնարհեսցիս առ մեզ՝ աւրելով մեզ բարձր հրամանաւ, և կաթուղիկոսական իշխանութեամբ. զի վերստին նորոգեսցես և հաստատեսցես զԱթոռս և զկարգս, և մեք լիցուք հպատակ ծառայ Սրբազան Վեհիդ մինչև 'ի մահ յամենայն իրս. և որ ոք անօրինեալ ընտունդանեսցէ հրամանաց Վեհիդ. և ուրացեալ զայս պատուանդակերպ կտակս, նզովս յԱստուծոյ և յամենայն Հայրապետաց սրբոց ընկալցի. և անլուծանելի բանադրանս և կապանս յերկինս և յերկրի 'ի սուրբ Հօրէդ ընկալցի: Զայս ինչ աղաչանս մեր. և դթութիւն սուրբ Հօրդ հաստարակաց, աղաչեմք, աղաչեմք. դարձեալ աղաչեմք, գթա՛ 'ի մեզ վասն Քրիստոսի Աստուծոյ մերոյ:

Ո՛ղջ լիցի 'ի գլուխն Քրիստոս, Գլուխդ մեր յամենայն ժամ: Իսկ մեք ստորագրեալք ծառայք Քրիստոսի և Տեառնդ հոգւով և մարմնով յօժար եմք վերոգրելոցս. և մահու չափ հնազանդ. և անդրդուելի ուխտադրութիւնս

## Տեղեկութիւն ՚ի վերայ հանդիսաւոր Տօնից ։

Ի սուրբ Յարութեան զատկի Կիւրակէի երեկոյին ելանեն հանդիսիւ, պայծառ զգեստուք, և ամենայն զարդուք ՚ի մեծ դաւիթն, ուր տանեն անդաստան. ապա դառնան յեկեղեցին և կատարեն զպաշտօն ժամերգութեան ։

Յերկուշաբթի օրն սուրբ Զատկին, զկնի սրբոյ Պատարագին ելանեն ՚ի մեծահանդէս թափօր ՚ի մէջ սրբոց Յակոբեանց եկեղեցւոյն ։

Ի Վարդավառի Շաբաթ երեկոյին զկնի ժամերգութեան նախատօնակ տանեն սրբոյ Յակոբայ Տեառն եղբօր. յայնմ աւուր նստաւ յԱթոռն Երուսաղէմի Պատրիարքը. և զկնի եկեղեցին հսկումն տանեն ։

Ի Վերացման խաչի Շաբաթ երեկոյին ՚ի սուրբ Գլխադրէն զկենաց փայտն տանին հանդիսիւ յԱւագ խորանն զկնի ժամերգութեան ։ Ի Կիւրակէ երեկոյին նախ քան զժամերգութիւնն կատարի կարգ Վերացման խաչին հանդիսիւ մեծաւ քան Տօնացուցին ։

Ի տօնի Որդւոց Որոտման զկնի սրբոյ Պատարագին ելանեն մեծահանդէս թափօր ՚ի մէջ սրբոյ Յակոբայ եկեղեցւոյն ։

Ի 18 փետրվարի, Տեառնընդառաջի երեկոյին զկնի յայսմաւուրքին, նախ քան զժամերգութիւնն լինի ատենաբանութիւն համառօտ, և ամենայն զարդուք ելանեն ՚ի մեծ դաւիթն, ուր կատարի խորհուրդ հրավառութեան, և ապա եկեալ պաշտեն զժամերգութիւնն ։

Ի Տեառնընդառաջն երեկոյս լինի ճոխ նախատօնակ, այսինքն զկնի Ցայսմաւուրաց, առանց շուրջառի, և այլն. միայն որբազան Պատրիարքն զգենու ըզպատուական շուրջառ, և խնկարկէ, և այլն։

Ա. Ի 11 Յուլիսի, 'ի ծննդեան Յովհաննու Կարապետին։

Բ. Ի 25 Դեկտեմբերի, Դաւթի մարգարէին, և Յակոբայ Տեառն եղբօր։

Գ. Ի 21 Փետրվարի, Որդւոցն Որոտման, և ապա պաշտի ժամերգութիւնն։

Նա և յամենայն Շաբաթ երեկոյի բաց 'ի մեծի պահոց և յինանց, զկնի ժամերգութեան պարառեալ կանգնին բոլոր Եկեղեցականք առ դուռն սուրբ Գլխադրին, և ասեն Շարական. « Որ էնն յէութեան ». և որբազան Պատրիարքն Հայրն արկեալ զիւրև շուրջառ, խնկարկէ ամենայն սրբասահման Տեղեաց և Պատկերաց սրբոց, և յաւարտին արձակին։ Իսկ եթէ առ հարկի կարևոր գործոց իւիք որբազան Պատրիարքն չգտանիցի յեկեղեցւոջ յայնմ երեկոյի, ոչ կատարի այս արարողութիւն, որ 'ի նախնի Հարց մերոց վերապահեալ է Նորին Սրբազնութեան։

Ի սրբոց Յակոբեանց վանաց մինչ ՚ի սուրբ Յարութիւն։

Որդ՝ ելեալ ՚ի սուրբ Յակոբայ, և գնացեալ յաջմէ սուրբ մենաստանիս դէպ ՚ի հիւսիս ուղիղ պողոտայիւ. անցեալ զաւաղջեաւ ձմերանոցին, և ամրոցին Դաւթի մինչ ՚ի սկիզբըն վաճառանոցին, դառնալով յաջմէ դէպ յարևելս, յաջմէ և յահեկէ սրճանոցք և մաղազայ և կրպակք սուրբ Աթոռոյս են. և գնացեալ մինչ ՚ի քառադիմի ճանապարհն, և անտի դառնալով ՚ի ձախմէ՝ անցեալ ՚ի ներքոյ կամարին՝ յաջմէ գոյ մեծ երկաթի դուռն մի, որ է վանք սրբոյն Յովհաննու կարապետին, և է ՚ի ձեռս Յունաց. որ նորոգեցաւ ՚ի հիմանց յամի Տ̃ն 1836. և ունի պայծառ եկեղեցի. և քանի մի սենեակս՝ և տեսուչ միաբանութեամբ։ Անտի ՚ի վաճառանոցն՝ գրեթէ կից նմին վանիցն է բաղանիք մի, որ կոչի ֆաֆաղ համամի. հանդէպ դրան բաղանեացն սրճանոց և կրպակ Աթոռոյս, որ է յիշատակ սուրբ Յարութեան ոէկիլ Սարգիս վարդապետին Հիզանցւոյ. և ՚ի յետուստ սրճանոցին մերոյ՝ է մեծագոյն աւազան կամ լիճ։

Անտի մինչ յեզր վաճառանոցին, դառնալով յաջմէ՝ գոն քանի մի կրպակք. և հանդէպ նոցին է վանքն Յունաց։ Անտի իջեալ ՚ի փոքր դուռն՝ որ է ՚ի ձախմէ, և մտեալ ընդ այն՝ 22 աստիճանաւ իջանէ ՚ի պողոտայն, որոյ լայնութիւնն է 12 տանաչափ։ Անտի ՚ի ձախմէ երեք աստիճանաւ իջեալ՝ ՚ի սուրբ Յարութեան գա-

ւիթն, որոյ երկայնութիւնն հիւսիսոյ առ հարաւ 90 ոտնաչափ. և լայնութիւնն արևելից առ արևմուտս 61։ Ի հարաւակողմն գաւթին էր բանտ մահապարտաց 'ի հնումն. ուր Դշխոյն Հեղինէ արգել զՅուդայ Կիւրեղն և զծերս Հրէից՝ խոստանալով զնոսա ցուցանել զտեղի սուրբ խաչին, ուր խոստովանեցաւ Յուդա Կիւրեղ զճշմարիտն, և եղև աշակերտ ճշմարտութեանն որդւոյն Աստուծոյ։ Նա աւերակ էր 'ի բազում ժամանակաց հետէ, յամի Տն 1838. առին Յոյնք և շինեցին վանատունս հոյակապ վերնովքն և ներքնովքն։ Մերձ նորին է մզկիթ և մինարէ այլազգեաց։



Վան Հայր Աբրահամու վանիցն, որ էր Հաբեշեաց։

Յարևելս գաւթին՝ 'ի ներքոյ երկրի առաճանաց է վանքն Հայր Աբրահամու, որ ունի կրկին եկեղեցի, մին մեծ 'ի վայր, և միւսն փոքրիկ 'ի վեր, որ է 'ի յետուստ կողմանէ սրբոյ Գողգոթային. յորոյ կեդրոնն գոյ փոսիկ մի զարդարեալ զարդուք. զորմէ ասեն Յոյնք՝ թէ Հայր Աբրահամ աստ կամեցաւ զենուլ զԻսահակ զորդին իւր, ուստի դարձաւ 'ի կողմն Գողգոթային, և ետես զխոյն կախեալ 'ի ծառոյն։ Կուսանելոյս իմանայ զմարենիս. և Եղիշէ վարդապետն մեր, եղևին փայտն, իսկ այլք զայլ ինչ իմանան ըզծառն Սաբեկայ, յորմէ կախեցաւ խոյն։

Յոյնք պատրելով զպարզամիտս ցուցանեն զձիթենի մի, թէ սա է ծառն Սաբեկայ, փոխանակ որոյ կոչի Հայր Աբրահամու վանք, ուր էր յառաջագոյն վանք Ճապկեչից, և ժամանակ ինչ կայր 'ի ձեռս մեր. որպէս գրէ Հաննա պատմագիր, յերես 243. իսկ այժմ Յոյնք ունին զնա :



Վասն սրբոյն Յովհաննու աւետարանչի եկեղեցւոյն մերոյ:

Յաջմէ սոյն վանիցս մանաւանդ և 'ի ներքոյ նորին՝ է փոքրիկ և պայծառ եկեղեցի մի՝ յանուն սրբոյն Յովհաննու աւետարանչին, ուր առի կայր սուրբն Յովհաննէս հանդէպ խաչելութեան Տեառն՝ յաւուր մեծի Ուրբաթու. և Քրիստոս 'ի վերայ խաչին առաց ցմայր իւր. « Կին դու՝ ահա որդի քո. Ապա ասէ ցաշակերտն, ահա մայր քո ». Յովհ. ԺԹ. 26, 27: Այս եկեղեցւոյ երկայնութիւն է արևելից առ արեւմուտս 11 ոտնաչափ, և լայնութիւն հիւսիսոյ առ հարաւ 28: Այս ունի զերկու խորանս. Առաջ խորանն է յանուն սրբոյն Յովհաննու աւետարանչին. աջակողմեան խորանն է՝ չարչարանաց և կապանացն Քրիստոսի. զի գոյ անդ մասն ինչ 'ի քարեայ սիւնէն՝ յոր կապեցին զՔրիստոս 'ի տան Կայիափայ քահանայապետին, որ է արծաթապատ, և միշտավառ կանթեղք պատուին 'ի մէնջ: Իսկ ձախակողմեան խորանն՝ է յանուն Հօրն Աբրահամու, և զենման իսահակայ :

X 60 X

Յամի Տեառն 1849. յաւուրս Տ. Կիրակոսի Արքազեան Պատրիարքին 'ի Ներքուստ քաղաքին նորոգ շինեցան պատկերազարդ կճեայ քարամբք երեքին խորանքն, և հինգ կաթողիկէիւք մարմարիոնեայ գեղեցիկ յօրինեալ բեմն՝ և յատակք նոցին. նաև սպիտակացան և պայծառացան յոյժ յոյժ պատուական նիւթովք, որոյ յիշատակն օրհնութեամբ եղիցի։

Առաջի դրանն կայ հետք ոտից վկայի միում, զոր անդ այրեցեալ են այլազգիք. և մերձ նորին է ջրհոր մի, որ է յոյժ մեծագոյն։



Յաղագս Խփտայ Եկեղեցւոյն։

Յանջմէ եկեղեցւոյս Մերոյ 'ի յանկեանն գոյ դուռն մի՝ որ մտանէ ընդ արևելս՝ է եկեղեցին Խփտուց, որ կոչի Մէլքէ, այսինքն Միքայէլի հրըեշտակապետին. և 'ի հարաւոյ կողմանէ 'ի միջոյ նորին ելանէ իբր 13 աստիճանաւ 'ի վեր, անդ է եկեղեցի մի, որ կոչի Չորից կենդանեաց կամ Քառակերպեան։ Զսա յամի Տեառն 1852. Հաբէշք դաւով առին 'ի Խփտուց, յորում պատարագեն այժմ։

Նա անտի ընդ միով դրամբ մտանէ 'ի տանիս սուրբ Լուսաւորչի եկեղեցւոյն մերոյ, և Գիւտ խաչին. զորոյ զտանիսն և զկաթուղիկէն նորոգեաց Գրիգոր հայրապետ Շղթայակիրն. Ի Թւ-Հայոց՝ ՌՃԿԸ։

Անդ է և վանքն Հաղբէշխց՝ ուր են հնդետասան սեննեակք փոքր և մեծ. որ է ընդ իշխանութեամբ մերով:

Ի գաւթի անդ առաջի դրան եկեղեցւոյն խաչուոց գոյ փոքրիկ դուռն մի՝ որ մտանէ 'ի հարաւ, է մատուռ մի յանուն սուրբ Աստուածածնի, որ էր ազգին Հաղբէշկց, և ժամանակ ինչ մնաց 'ի ձեռս Մեր. բայց այժմ 'ի ձեռս Յունաց է. Գիրք Հաննա պարտմագիր, յերես 240:



Յաղագս սգաւոր սուրբ Աստուածածնի եկեղեցւոյն:

Ի վերայ վերոյիշեալ մատրանին, և կից Գողգոթային, որ ելանէ հնդետասան աստիճանաւ 'ի փոքրիկ եկեղեցին Լատինաց, որ կոչի Սգգաւոր. որոյ է լուսամուտ մի՝ որ հայի 'ի ներքըս 'ի Տարածման տեղին, և է յոյժ գեղեցիկ և պայծառ:

Այս 'ի ներքոյ նորին աստիճանաց՝ գոյ կարմիր քարեայ սիւն մի. զորմէ գրէ Գրիգոր եպիսկոպոսն Արծրունեան յերուսաղէմէ 'ի Հայս. թէ յաւուրս Յուստինիանոսի կայսերն, 'ի հայրապետութեան Յուանոսի, 'ի յետին ամին, և յառաջնում ամի յաջորդի նորին սրբոյն Մակարիոսի եղև քսութիւն 'ի Հրէից առ կայսրն վասն Հայոց, որ անսացեալ նոցա բռնութք հրամայեաց զՏեառնընդառաջն կատարել, 'ի 2 աւուր փետրվարի. և զԾնունդ՝ 'ի 25 Դեկտեմբերի:

սուլթանն Եգիպտոսի. մերձ զանգակատանն դէպ 'ի հարաւ, եկեղեցին է Մարիամու Մագդաղենացւոյն, կողմանն՝ սրբոյն Անդրէի առաքելոյն. իսկ միւսն՝ սրբոյն Նիկողայոսի Հայրապետին: Այս էր 'ի ձեռս Վրաց ազգին.



Վասն սուրբ Պատանատեղւոյն Քրիստոսի:

Մտեալ ընդ դուռն սուրբ Յարութեան տաճարին, 'ի յաջմէ 'ի յետոյս դրանն է քարեայ սանդուղ՝ որ ելանէ 19 աստիճանաւ 'ի սուրբ Գողգոթայ: Ի ձախմէ է տեղի աղաւթից դռնապանաց, ուր նստին: Ի վերայ դրանս է երկրորդ Գողգոթայ վիճակին մեր: Գնալով իբր 30 ոտնաչափ՝ է սուրբ Պատանատեղին, որոյ երկայնութիւնն 12 թզաչափ, և լայնութիւնն 5: Յորոյ վերայ կախեալ կան ութն լապտերք՝ կամ կանթեղ. որոց երկուքն Մեր է, չորսն Յունաց, մին Լատինաց, և մինն Խփտւոց: Որոյ 'ի սնարսն այսինքն առ արևելս և առ արևմուտս եդեալ կան վեց զոյգ աշտանակք. երեք զոյգն մեծագոյն, և երեք զոյգ փոքր. որոց առաջինն զոյգ մի մեծ և զոյգ մի փոքր է Լատինաց. միջինն մի զոյգ մեծ, և մի զոյգ փոքր Յունաց. և վերջին կողմանն զոյգ մի յոյժ մեծագոյն և քանդակածոյ, և զոյգ մի փոքր, աշտանակք մեր են: Նոյնպէս մեք և Յոյնք և Լատինք ունիմք անդ մի մի եռոտեան սանդուղ փայտեայ, որովք ելեալ լուցանեմք կանթեղս զմոմեղէնս: . . . .

Յաղագս որմոց Խուղաբերից սեղանոյն մերոյ ։

Գտանելով 'ի սուրբ Գատանատեղւոյն իբր 40 ստնաչափ առ արեւմուտս, յաջմէ երից կամարաց մերոց է Խուղաբերից սուրբ Սեղանն. 'ի յետուստ սեղանոյն է կամարն մեր՝ որոյ կից է սենեակն Յունաց. և միւս ևս կամարին մերոյ է կից Խփտւոց սենեկին. յերկոսին կողմունս կամարիս գոն կրկին պատկերք, և կանթեղ մի առ կախեալ 'ի կեդրոնէն ։

Քանզի Խուղաբեր կանայք աստ կացեալ աւէրին ցմիմեանս. « Ո՞վ թաւալեցուսցէ մեզ ըզվէմն Գերեզմանին, և հայեցեալ տեսին՝ զի թաւալեցուցեալ էր վէմն 'ի Գերեզմանէն. քանզի էր մեծ յոյժ »։ Մարկ. Գ. 4։ Առոյ առաջի մշտավառ կանթեղ մի. և յատուկ շարան հինգ կանթեղօք ունիմք ։ Ի մէջ կամարին գոյ յատուկ կանթեղ մի. և շարան մի վեց կանթեղօք, առընթեր կից սեղանոյն է սիւնն մեր, յորոյ վերայ է մեծ պատկեր մի Խաչելութեան. առաջի նորա մշտավառ կանթեղ մի. և պատկեր մի ևս ունիմք 'ի գլուխ նոյն սեանն. 'ի յատն վերնոյ կամարին մերոյ, յատակէն մինչև 'ի վեր 'ի սանխան սենեկի մեր լուսարարին յանդիման սրբոյ Գերեզմանի մեծ կամարի յանկիւնէն սահման Ազգիս մերոյ է ։

Հանդէպ Խուղաբերից սեղանոյ երկրորդ սեանն. յորոյ վերայ է պատկեր սրբոյ Յարութեան. յատուկ կանթեղ մի առաջի նորա. և 'ի մէջ երկրորդ կամարին կանթեղ մի՝ և շարան մի

բանդկացեալ 'ի վեց կանթեղէ ունիմք ։ Ի վերայ երրորդ սեանն գոյ պատկեր ծննդեանն Քրիստոսի , որոյ առաջի յատակ կանթեղ մի մշտավառ ․ և 'ի մէջ երրորդ կամարին շարան մի 'ի վեց կանթեղէ , և յատակ կանթեղ մի ևս առաջի նորա ։ Եւ 'ի վերայ չորրորդ սեանն մերոյ գոյ պատկեր վերափոխման սուրբ Աստուածածնի , որոյ առաջի յատակ մշտավառ կանթեղ մի ունիմք ․ սեանս կից է սեղանակն Յունաց , և յայսկոյս սեանն առ կախեալ կայ ջրոյ ժողովրդին մեր , և առաջի նորա կոնք ։ Այն չորեքին սիւնքն հանդերձ երեքին կամարօք , պատկերօք , կանթեղօք , և աշտանակօք , 'ի յատակէն մինչև ցվերն 'ի տանիսն՝ յատակ մեր վիճակին է , և սեպհական կալուածք և միւլք , յորս ոչ գոյ ինչ մասն ընկերութեանս ։ Չորրորդ սիւնն՝ որ է կից Յունաց սեղանկին , և գոյ ժողովրդին մեր՝ յանկիւնէն մինչև 'ի յանկիւնն սենեկի առաջին մերոյ 'ի վերն՝ ուր զետեղեալ կան խաչվառքն մեր եկեղեցական , և 'ի ներքոյ նորա է բաղնոց՝ ուր նստի Տեառնն մեր , և այլն ։ Որոյ հանդէպ գոյ բոլորակ կճեայ քար մի , որ է տեղի Ուժաթափման սուրբ Աստուածածնին , որ կայր յանդիման խաչելութեան Որդւոյն իւրոյ Միածնին՝ յաւուր մեծի Աւագ Ուրբաթու ․ և ցուցէր արտասուր յաչացն ցաւագին սրտիւ , որոյ շրջապատն է ճաղ երկաթեայ գմբէթաւոր , և աղաւնազարդ , և շրջապատ գմբեթին երկոտասան կանթեղք ․ յորոյ վերայ ջահ մի գոյ , և մշտավառ կանթեղ մի 'ի մէջ ճաղին , և չորս կանթեղ ևս

՚ի վերն, և ՚ի հանդիսի աւուրս մեր զարդարեմք զայն ըստ հաճոյից մերոց, քանզի սահման մեր է։

Յամի Տեառն 1832 ՚ի մեծի Պահոց չորրորդ կիւրակէին՝ Ցոյնք գրոհ տուեալ ՚ի գիշերի կոտորեալ խորտակեցին զմարմարիոնեայ պատկերազարդ քարն Ուժաթափման տեղւոյն, որ էր յիշատակ 36 անձանց Ուխտաւորաց՝ որք ծափասայղ եղեն. յորոյ վերայ եդաւ քարն երկու ամսօք յառաջ, մինչ Մահմէտ Ալի փաշայն Եգիպտոսի՝ տիրէր Ասորեստանեայց և Երուսաղէմի։

Ի դրանէ Խփտուոց սենեկին մինչև ՚ի ծայր աստիճանաց, որ է մերձ սուրբ տեղւոյն Աստուածածնի Ուժաթափման՝ փայտեայ և տախտակաշէն փողոց, և պահարան է զգեստուց մերոց։ 38 Աստիճանաւ ելանէ ՚ի վերնատուն մեր, բայց ՚ի կէս աստիճանաց գոյ սենեակ մի իբր հիւրանոց. որոյ լուսամուտքն հային ՚ի վերայ Ուժաթափման սուրբ Տեղւոյն. վերնատան երկայնութիւն է 60 ոտնաչափ, և լայնութիւնն 30։ Աւագ խորանն կոչի Երկրորդ Գողգոթայ կամ Խաչելութիւն, և ՚ի յետոյս խորանին ցածագոյն երեք լուսամուտք են՝ որք հային առ սուրբ Գողգոթայ և ՚ի վերայ Պատանատեղւոյն։ Իսկ միւս խորանն կոչի Երաշխաւոր սուրբ Աստուածածնի. զի Եգիպտացի Մարիամն եկն ՚ի սուրբ Յարութիւն, երաշխաւոր ունելով զսուրբ Կոյսն առ որդին իւր Միածին, և այլն։ Այս յետ կատարելոյ զուխտն իւր՝ անկեալ առաջի սուրբ Աստուածածնի պատկերին, լուաւ զձայն ՚ի նմանէ, թէ անցանիցես ընդ Յորդանան, և բարի հան-

գիտէ զայցես. և եկեալ գնաց յանկոյս Յորդանանու յանապատ, ուր ճգնեալ զամս քառն և եօթն, հանգեաւ 'ի Քրիստոս: Յայսմաւուր. և Չամչեան պատմագիր, յերես 236:

Եկեղեցւոյս երկայնութիւնն է երեսուն և երկու ոտնաչափ, և լայնութիւնն երկոտասան. որոյ երկու լուսամուտքն հային 'ի վերայ Պատանատեղւոյն. և առ հարաւ ունի մեծ լուսամուտ մի, որ հայի 'ի վերայ գաւթի սրբոյ Յարութեան: Իսկ 'ի յետուստ խորանին գոյ դուռն մի, որ է խոհարան. և անտի քանի մի աստիճանաւ ելանէ 'ի մեծ լուսամուտն՝ որ հայի 'ի վերայ սրբոյ Յարութեան գաւթին. անտի ելանէ 'ի սեղանատունն, և ունի լուսամուտ 'ի վերայ Պատանատեղւոյն:

Կարևոր համարիմ ծանուցանել և զայն, զի 'ի գալ Տէրունական Ուխտաւորաց 'ի սուրբ Յարութեան տաճարն. թափօրիւ շրջեցուցանեն 'ի սրբազան տեղիս Քրիստոսի:

Նախ՝ առնուն Ուխտաւորքն զմոմս ըստ կանոնի, և ապա առնուն յատուկ լուսաւորեայ մոմ իւրաքանչիւր ոք 'ի ձեռս, և զկնի Թափօրականաց ջերմեռանդութեամբ և հոգևոր փափագանօք շրջին յամենայն տեղիս, 'ի սուրբ Կենսատու գերեզմանն Քրիստոսի, և եկեալ ելանեն 'ի վերնատունն 'ի վիճակն մեր: Ապա առանձին առանձին երկուս կամ երիս եղբարք ելեալ շրջին 'ի ս̃ք տեղիսն Ք̃ի ջերմեռանդն աղօթիւք: Իսկ 'ի հինգերորդ ժամու յամենայն գիշերի՝ միշտ պաշտին 'ի սուրբ Վերնատունն ժամերգութիւնք:

քայ Պատրիարքին առ Լատինացիս, և գնաց մի 'ի ներքոյ երգեհոնի նոցին. և այս գաշն եւս հաստատեցին յինքեանս, զի 'ի սահմանի մերում՝ որ է արեւմտեան որմոյ յեցեալ բաժանեալ սիւքըն՝ զոր ըմբռնեալ տիրէին կոչեմք, յորոյ վերայ դիցի 'ի վեր փոքր պատկեր մի Պօղոսին, որ է Ուրբանոսի ուխտերորդի, որ կայ մինչև ցայսօր. և 'ի ներքոյ նորին գոյ և մեր փոքր պատկեր Գրիգոր Պատրիարքի Հայրապետին մերոյ, և 'ի ներքոյ նորին եւս է պատկերն Յունաց գծագրեալ յանուն Կոստանդիանոսի և Հեղինեայ:

Այս 'ի Թիւ Հայոց՝ ՌՃԿԹ. Շղթայակիր Գրիգոր Հայրապետն մեր, և սրբազան Յովհաննէս Պատրիարքն Կոստանդնուպօլսոյ նորոգեցին զմիջնակն մեր, և բարձին 'ի միջի եղեալ քառանկիւնի հաստաշէն սիւնն, որ կայր յանդիման Աւագ խորանին. Տե՛ս 'ի պատմութեան Հաննա Վարդապետին, յերես 187. 192:

Յամի Տեառն 1808, և Հայոց՝ ՌՄԾԷ. հրդդեհեալ այրեցաւ սուրբ Յարութեան տաճարն յաւուրս Սրբազան Պատրիարքին Տ. Թէոդորոսի Վանեցւոյ. վասն որոյ վերստին նորոգեցաւ սահմանն մերս Վերնատան ըստ առաջին դրութեն. յամի Տեառն 1810, և Հայոց՝ ՌՄԾԹ:

Արդ՝ 'ի ներքոյ երից կամարաց մերոց են երեք կամարք և երեք սենեակք, զորս Յոյնք ունին այժմ. զի սոյն երեք կամարք և սենեակք եկեղեցի Հապէշից՝ 'ի ձեռս մեր էր, յափշտակեցին Յոյնք 'ի մէնջ. 'ի Թուին Հայոց՝ ՌՃԵ. Որպէս գրէ Հաննա պատմութեան, յերես 234:

Վերնատան վեց կամարաց միջի չորան կանԹեղքն՝ որ է 36. և ներքին երից մեր կամարաց միջի չորան կանԹեղքն՝ որ է 21. 'ի հանդիսի աւուրս լուցանեմք ըստ սովորուԹեանն: Նա և յաւուրս հանդիսի Յունաց՝ և Լատինացւոց:

ԵԹէ նոքա նախ քան զհանդէսն իւրեանց լուցանեն յաւուրս հանդիսի մերում. և երբեմն զներքինն միայն լուցանեմք մեք, զի Յունաց ոչ գոյ վերնատունն՝ և վերին կամարք. բայց Լատինացւոց գոյ՝ եԹէ նոքա լուցանեն վասն մեր հանդիսից, և մեք լուցանեմք վասն նոցա:

Ի բաժանեալ սիւնէն մինչ 'ի Յովսեփայ ԱրեմաԹացւոյ գերեզմանի սահմանն, որ է երկու սենեակ՝ Խփտւոց է. յորոց վերայ է վերնատունն Լատինաց, որք են մետասան կամարօք:



## Վասն գերեզմանին և եկեղեցւոյն Յովսեփայ ԱրեմաԹացւոյ:

Կրկին դրամբք մտանէ յեկեղեցին և 'ի գերեզման նորա, միովն մտանէ ուղղակի յետ կոյս սեղանոյն, և միւսովն մտանէ 'ի սրահն. 'ի ձախմէ մտանէ յեկեղեցին, և ուղղակի ելանէ աստիճանաւ 'ի սենեակն մեր. որ է 'ի վերայ եկեղեցւոյն և սրահին, կամարն որ կայ 'ի վերայ սեղանոյն, է Ասորւոց. զի նոցին պատկեր եդեալ կայ 'ի վերայ դրանն, և չորան կանԹեղք նոցա են:

Ի վերայ երկուց դրանց միջի սեանն է պատկեր մեր՝ որ է սրբոյն Սեղբեստրոսի․ որոյ առաջի է կանթեղ մի մշտավառ․ ’ի մէջ կամարին մերոյ շարան մի վեց կանթեղօք․ և կանթեղ մի ևս առաջի շարանին կախեալ կայ։ Ի վերայ մեր և Յունաց երեք սենեկաց միջի սեանն վերայ դոյ պատկեր մեր, որ է սրբոյն Գրիգորի Լուսաւորչին մերոյ, որոյ առաջի է կանթեղ մի մշտավառ․ և Յունաց սենեկի կամարի միջի կէս շարան՝ որ է երեք կանթեղ՝ մեր է․ քանզի նոյն սենեկի կէսն ազգիս մեր էր, բայց յամի Տեառն 1808 մինչ հրկէզ եղև, 1810 ’ի շինելն՝ յափշտակեցին Յոյնք։

Առ յերից սենեկացս մինչև ’ի չըբաղ փիրէնի է սահմանն Յունաց, և կից սոյն չըբաղ փիրէնի երկու սիւնքն և ’ի յետուստ երդեհանին է Լատինացւոց․ և ’ի մէջ երկուց սեանցս է ընդարձակ ճանապարհ, որոյ ահեակ կողմն մեր է, յորում գնեմք սանդուղ և զայլ ինչ․ և աջ կողմն է Լատինացւոց․ ընդ այս ճանապարհ երթամք ’ի ջրհորն, որ յատկապէս սեպհական է Ազգիս մերոյ՝ Ւէնէրիւ և հրովարտակաւ և Կէօճէրիւ դատարանի․ և յաջմէ ջրհորոյն ունիմք յատուկ լուացարան ( չամաղըխանոյ ), որոյ և յանդիմանն ևս Յոյնք ունին լուացարան, և ’ի ձախմէ է երկաթեայ դուռն վանացն Լատինացւոց։

Յովսեփայ Արեմաթացւոյ եկեղեցին է յանուն սուրբ Աստուածածնի, յոր երբեմն պատարագեն Ասորիք, և է ’ի ձեռս մեր, և երբեմն մեք պատարագեմք․ առաջի սեղանոյն յատուկ

## Յաղագս սրբոյ և կենսատու Գերեզմանին Քրիստոսի ։

Կենսատու սուրբ Գերեզմանն Քրիստոսի է 'ի կեդրոն մեծի ատենի սրբոյ Յարութեան տաճարին 'ի ներքոյ մեծագոյն արճճապատ գըմբեթին . Թէպէտ արտաքուստ առակցեալ՝ մի եկեղեցի տեսանի, սակայն 'ի ներքուստ բաժանեալ կայ յերկուս մասունս, և յատուկ կրէին դրամբք և յատակաւ . առաջին մասն է առ արևելս, քառանկիւնի, որոյ դուռն հայի յարևւելս, յաջմէ և յահեկէ դրանն է բազմոց, յորոյ վերայ եդեալ կան անխախտ երեք զոյգ միջակ աշտանակք, որոց մի զոյգն կճեայ աշտանակք են Յունաց, միջին մի զոյգն պղնձեայ մեր, և մի զոյգ ևս պղնձեայ աշտանակք Լատինաց, և 'ի ծագս բազմոցին երկուց կողմանց մի զոյգ մեծագոյն քարեայ աշտանակք են Յունաց, և 'ի յետուստ բազմոցին եդեալ՝ մի զոյգ մեծագոյն աշտանակք մերձ որմոյ Գերեզմանին են Լատինացւոց, և առընթեր նոցին առ արևելս մեծագոյն զոյգ մի աշտանակք մեր են ։

Ի վերայ նոյն արտաքին դրանն 'ի ճակատն եդեալ կայ սուրբ Յարութեան պատկերն մեր . յորում է և պատկերն ս̄բ Լուսաւորչի 'ի նախնեաց անտի . որոյ առաջի մշտավառ կանթեղ մի . և 'ի վերայ սուրբ Պատկերին յորմն քանդակեալ կայ Յարութեան պատկերն Յունաց, որոյ առաջի մշտավառ կանթեղ մի, և 'ի վերայ քանդակածոյ պատկերին Յունաց՝ առ կախեալ կայ պատկերն Լատինաց, մշտավառ կանթեղ մի ա-

ռաջի նորա, և 'ի վերայ դրանն և առեննին հռ-
վմանի ունի ասազանիշ լայնատարած մամաշոր՝
ընկերութեամբ երից ազգաց՝ Հայոց, Յունաց
և Լատինաց. որոյ առաստաղք ձգեալ և ամրա-
ցեալ կան 'ի մեծ կամարն Յունաց, և 'ի մեր վեր-
նատան կամարն և Լատինաց կամարն որ 'ի վե-
րայ Գարտիզին. և 'ի յետ կոյս աւուջի. երկքա-
ցիկ դրանն են կրկին դրունք ընդ որովք ելա-
նեն 'ի տանիս սրբոյ Գերեզմանին. Գարտիզի կող-
ման դուռն յատուկ Լատինաց է, և բանալին
առ նոսա է. իսկ մեր կողմանն դուռն ընկերու-
թեամբ է մեր և Յունաց, որոյ մի բանալին առ
մեզ կայ, և միւսն առ Յոյնս:

Նաև 'ի ներքուստ սոյն երկքացիկ դրան 'ի
Ճակատն եդեալ կայ մամաշոր պատկերն Յու-
նաց, յորոյ վերայ պատկերն Լատինաց է, իսկ
Գարտիզի կողման կամարն դատարկ է, իսկ 'ի
մեր կողմանն 'ի մէջ կամարին յորում եդեալ կայ
մեր սուրբ Յարութեան պատկերն, և 'ի ներքոյ
մեր պատկերին յանկեանն դնեմք յատուկ շար-
ժական տախտակ մի, յորոյ վերայ դնի նշխարք,
բաժակ, խորհրդատետր, և այլ հարկաւոր իրք
'ի ժամ սուրբ Պատարագին մերոյ, ապա 'ի բաց
առնումք անտի զկնի պատարագին:

Հանդէպ մեր պատկերին 'ի վերայ վիմի հր-
րեշտակին ունիմք չորս մշտավառ կանթեղս, և
կանթեղ մի ևս խփտուոց 'ի չորս մեր կանթե-
ղաց. և հինգ կանթեղ մշտավառ՝ միջինն է Լա-
տինաց, և Գարտիզի կողման հինգ կանթեղ մըշ-
տավառ է Յունաց, և նոցից վէմն հրեշտակին

է 'ի կեդրոնն, որոյ բարձրութիւնն է վեց թզա-չափ և լայնութիւնն երկու, յատակն և որմն կերտեալ կան կճեայ պատուական քարամբք, և նկարագրեալ սեամբք յօրինեալ գեղեցիկ. և յանկ-կեան մեր կողման՝ որ է հարաւ՝ է բոլորշի լու-սամուտ մի, որով այս արտաքս լուսահան Վար-դապետն մեր զլուսաւորեալ մոմն. և յանկեան Պատրիարքի կողման լուսամուտն, որ առ հիւսիս՝ այս արտաքս Յունաց լուսահան Վարդապետն զլուսաւորեալ մոմն, որոյ երկայնութիւնն յա-րևելից յարևմուտս 12 թզաչափ; և լայնու-թիւնն 'ի հիւսիսոյ առ հարաւ 9 թզաչափ:

Իսկ երկրորդ մասն և ներքին դուռն սրբոյ Գերեզմանին է սակաւ ինչ խոնարհագոյն քան զառաջինն, և ճակատ դրանն՝ յաջմէ և յահե-կէ պատուական կճեայ քանդակածոյ և փորու-դեայ քարամբք յօրինեալ ծաղկանեայ՝ ձագա-ձև, մարդակերպ և հրեշտակակերպ. սուրբ Գե-րեզմանն 'ի ներքս յարևելից կուսէ առ հիւսիս կայ. որոյ երկայնութիւնն յարևելից յարևմու-տս է տասն թզաչափ, և լայնութիւնն հինգ. բարձրութիւնն երեք. պատեալ մաքուր սպի-տակափայլ մարմարիոնեայ քարամբք, նոյնգու-նակ և չորեքին որմքն և յատակ սրբոյ մատրա-նին. Ի վերայ սրբոյ Գերեզմանին 'ի հիւսիսային յորմն 'ի յանկեան դրանն դնի մեր սուրբ Պատ-կերքն, որոյ առաջի վեց աշտանակ և չորս ծա-ղիկք 'ի վարդ. և 'ի մէջն է պատկերն Յունաց համանկ կճեայ և քանդակածոյ, որոյ առաջի վեց աշտանակք և չորս ծաղիկք 'ի վարդ. և յաջմէ

նորին եդեալ կայ պատկերն Լատինաց՝ փանդու- կապարա, և մէջ աշտանակ և չորս ծաղիկ ։ Ընդ- հանդէպ դրանն՝ յորում արեւմտեան գոյ պատու- հան մի ընկերութեանն ․ ուր դնին մոմ, մոմա- րէչ, քերիչ, և ոսեղ, և այլն ։

Աշտանակ կանթեղք 'ի վերայ կենսատու Գերեզմանին է 43 ․ որոց 13 մեր, 13 Յունաց, 13 Լատինաց, և 4 Ղպտւոց ․ 'ի ժամ սուրբ Պա- տարագին կազմի սեղան շարժական 'ի վերայ սորա Գերեզմանին, և ծածկեալ պատուական լաւ, արկանի կորբուրայ, և դնի ծեւալ գէմ- խաչ, Աւետարան, և յիշատակարանք, և եր- կու այլ աշտանակք ․ և զբակալուս պատարա- գամատոյց ըստ միշտ սովորութեան, և զորդ- տաշի սորա Գերեզմանին, և զկնի սորա Պա- տարագին 'ի բաց բառնին ամենայն եղեալք ․ սոյն օրինակ առնեն Յոյնք, և Լատինք ։

Իսկ արտաքոյ բարձրութեան սորա Գերեզ- մանի մատրանս 'ի յատակէ մինչև ցգօտին 18 Թիզ, և մինչև ցբաւիղն 20 ․ և 'ի վերայ բաւի- ղոյն գոն հաստատեալ պատուանդան 36 աշտա- նակաց, զորոց կախին 36 կանթեղք, որոց 12 աշտանակք և 12 կանթեղք մեր են ․ նոյն Թը- ւով աշտանակք և կանթեղք Յունաց և Լատի- նաց ։ Ընդ գմբէթն սորա Գերեզմանին, հաս- տատեալ կայ 'ի վերայ երկոտասան սեանց՝ և կամարայ ․ զոյգ զոյգ խարսխեալ ․ բարձրու- թիւնն 10 Թզաչափ մինչև ցգօտին, և չորս չորս Թիզ տարակացք յիրերաց ․ և գմբէթն կապու- րեայ տախտակամած ։

Ի մէջ 12 կամարացս կախին երեք՝երեք կանթեղք, որ առնէ 36. որոց 12 Մեր են, 12 Յունաց, և 12 Լատինաց։ Եւ ՚ի վերայ գօտւոյն են 36 աշտանակք՝ զորոց կախին 36 կանթեղք. որոց 12 աշտանակք՝ և 12 կանթեղք մեր են, և նոյն թուով Յունաց և Լատինաց. և երեք մեծագոյն կանթեղք ՚ի մէջ գմբեթին, որոց մին մեր է, միւսն Յունաց, և միւսն Լատինաց։

Յամի Տեառն 1829, մինչ ողորմութեամբն Աստուծոյ նորոգեցան հնագոյն հրովարտակք Պատարագի սրբոյ Գերեզմանին Քրիստոսի, ՚ի յերկրորդումն աւուր Սեպտեմբեր ամսոյ եղև սկիզբն պատարագելոյ ՚ի վերայ շնորհատու Գերեզմանին, բայց այսու պայմանաւ. նախ՝ Յոյնք, զկնի մեք, և ապա Լատինք պատարագեն, բայց ՚ի յատկացեալ հանդիսի աւուր՝ զկնի ամենեցուն հանդիսատէրն ունի պատարագել մեծաւ հանդիսիւ, որպէս ասացեալ եմք ՚ի տեղւոջ իւրում։

Որդ՝ վերին մեծ կապարապատ գմբէթն սրբոյ Յարութեան, որ այժմ ՚ի ձեռս Յունաց է, է կառուցեալ ՚ի վերայ քսան կամարաց. յորոց կախին շարանք կանթեղաց աւելի քան զերեք հարիւր. և ՚ի չորս կողմունս գմբեթիս են պատկերք սրբոց Աւետարանչաց, առաջի նոցա կախին ջահաձև կանթեղք. և դուռն կամարացս է ընդ արևելս ՚ի վերայ տանեաց, ընդ որ ելանեն և մտանեն Յոյնք։

## Յաղագս Եկեղեցւոյն Յունաց։

Եկեղեցին է հանդէպ սուրբ Գերեզմանին Քրիստոսի. 'ի մէջ նորին 'ի կեդրոնն գոյ կճեայ բոլորակ քար մի և փոս, որ ըստ նոցա նշանակէ լինել կեդրոն աշխարհի։ Յաջմէ և յահեկէ դասուց են կրկին աթոռք, ընդ որս ելանեն չորս չորս աստիճանաւ. խաչկալ խորանին գեղեցկանկար և ոսկեզօծ, և ունի զերիս դրունս. պատկերօք և կճեայ աշտանակօք, և ջահիւք, և լապտերօք զարդարեալ է ըստ ամենայնի. սա կառուցեալ է 'ի վերայ ութն կամարաց. և ունի հինգ լուսամուտս 'ի գմբէթն։ Սորա երկայնութիւնն է 120 ոտնաչափ, և լայնութիւնն 45։

Աւագ դուռն է հանդէպ Գերեզմանին. երկրորդն՝ մերձ աստիճանաց Գողգոթային. և երրորդն՝ մերձ Բանտին, և յատուկ դուռն մի ևս, որով ելանէ 'ի Գողգոթայ, և անտի 'ի սենեակսն և 'ի տանիսն։



## Վասն սրբոյ Պարտիզին։

Ի սրբոյ Գերեզմանէն գնալով դէպ 'ի հիւսիս 40 ոտնաչափ, ուր է բոլորակ մարմարիոնեայ քար մի՝ այն է սուրբ Պարտէզն. ուր Քրիստոս երևեցաւ Մարիամու Մագդաղենացւոյն՝ յետ Յարութեան նման պարտիզպանի. Յովհ. Ի. 14. 18։ Յորոյ վերայ ունիմք մշտավառ կան-

թեղ մի, առ կանթեղին Լատինաց. յաջմէ նա-րին տեղան պատարագամատոյց նոցա՝ յանուն Մարիամու Մագդաղենացւոյն ․ Ի ձախմէ սե-նեակ մի, յորոյ վերայ երգեհոն և նուագարան ունին ։ Ընդ նորին՝ առաջի դրան եկեղեցւոյն, գոյ բոլորակ մարմարիոնեայ քար մի եւ՝ որոյ շրջապատեալ է ճաճանց, անդ կայր Մարիամ Մագ-դաղենացին, անտի ետես զՔրիստոս. և յաջմէ դրանն է պահարան Ֆռանկաց ։

Յաղագս Եկեղեցւոյն Լատինացւոց ։

Ընդ չորս աստիճանաւ ելեալ մտանէ յե-կեղեցին Լատինացւոց, որ առ հիւսիս, որոյ եր-կայնութիւնն է 33 ոտնաչափ, և լայնութիւն 26 ։ Ունի զերիս խորանս, տեղանն որ կայ 'ի յետ կոյս դրան, է չարչարանաց. որոյ 'ի ներքս գոյ մասն մի 'ի քարեայ սիւնէն՝ յորում կապեցին զՔրիստոս 'ի տանն Կայիափայ, որ ունի բոլոր լուսամուտ մի, և գաւազան մի 'ի նմա եդեալ, և կալեալ զգաւազանն հարեցուցանեն 'ի սիւնն, և հանեալ համբուրեն՝ ըստ նոցին սովորու-թեանն ։ Իսկ միջին խորանն է յանուն սուրբ Աստ-ուածածնի, և յաջակողմեանն յանուն արքայ խա-չին. և մերձ խորանին գոյ դուռն մի՝ ընդ որ մտեալ լինի 'ի վանս նոցա ։

## Յաղագս չորրորդ Բանտին Քրիստոսի ։

Յելեալ յեկեղեցւոյն Լատինաց՝ գնալով ՚ի ձախմէ յառաջ եւս 108 ոտնաչափ՝ է չորրորդ Բանտն Քրիստոսի ։ Բանտք առաջին Բանտն է ՚ի տան Աննա քահանայապետին, որ է սուրբ Հրեշտակապետաց վանքն մեր ։ Երկրորդ Բանտն է ՚ի տան Կայիափայ քահանայապետին, որ է սուրբ Փրկչի վանքն մեր ։ Երրորդ Բանտն է ՚ի պալատին Պիղատոսի ։ Սա ՚ի չորրորդ Բանտն մնացեալ Փրկչին մերոյ ժամս երկու մինչեւ պատրաստեցին գործիս չարչարանաց եւ փայտն մահու ։ Եւ ունի զերկու սեղանս. ՚ի միջի ներքոյ սեղանոյն է պատուհան մի, ուր ասեն բանտարկեալ եղեւ Քրիստոս ։ Եւ եկեղեցւոյ երկայնութիւնն է 17 ոտնաչափ, եւ լայնութիւնն 13 ։ զոր 1858 յամին նորոգեցին Յոյնք ։

Ի ձախմէ դրան Բանտիս, է սեղան մի ։ ՚ի ներքոյ նորին գոյ կրկնաձեւ քար մի ։ զորմէ ասեն լինել ոտից շղթայից ։ բայց ըստ Լատինաց է տեղի ծնգացն Փրկչին մերոյ՝ յոր անկաւ, եւ այս ամենայն այժմ է ՚ի ձեռս Յունաց ։ Թէպէտ պատմաբանք ասեն՝ թէ էր երբեմն, զի չորրորդ Բանտս այս էր ՚ի ձեռս Հաբէշից ։



Յաղագս Ղօնկինոսի հարիւրապետի խորանին ։

Գտանելով 'ի չորրորդ Բանտէս իբր 63 ոտնաչափ՝ է խորան մի յանուն սրբոյն Ղունկիանոսի, որ հաւատաց 'ի Խաչելութիւնն Քրիստոսի՝ տեսանելով զեղեալսն, այսինքն զխաւարումըն արեգական, զշարժումն երկրի, զպատառումն վարագուրի տաճարին՝ և վիմացն, և ըզյարութիւն մեռելոցն. «Եւ տեսեալ հարիւրապետին որ ինչ եղևն ». Մատթ. ԻԷ. 54։ Մարկ. ԺԵ. 39։ Ղուկ. ԻԳ. 47։ «Եւ այլ ոմն զինուոր խոցեաց տիգաւ զկողն Յիսուսի ». ըստ Յովհ. ԺԹ. 34. 37։ «Այլ մի ոմն 'ի զինուորացն տիգաւ խոցեաց զկողս նորա, եւ վաղվաղակի արիւն և ջուր ». ցայտեալ շիթ մի յարենէ Փրկչին յաչս նորա, իսկ և իսկ ընկալաւ զլոյս աչաց մարմնոյն, քանզի միականի էր, ընդ նմին լուսաւորեցաւ և ակն հոգւոյն. ուստի հաւատաց, և զղջացեալ ապաշաւեաց սաստ, և վկայեալ մարտիրոսացաւ. Յայսմաւուրք, Մարտի 16։ Աստ ոչ գամք 'ի Թափօրի և ոչ 'ի Պարտէզն ։

Բայց զանազան կարծիք է 'ի վերայ երկոցունց, թէ ո՞րն իցէ աստ ճգնեալ, հարիւրապետն, թէ զինուորն՝ որ խոցեաց զկողն Յիսուսի ։ Եւ սա էր ազգին Հապէշից, բայց այժմ Յոյնք ունին զսա ։

### Յաղագս հանդերձի բաժանման խորանին միոյ և վիճակին ։

Աստի գնալով 23 ոտնաչափ՝ է խորան հանդերձի բաժանման, այսինքն 'ի մէջ Դունկիանոսի և հանդերձի բաժանման խորանացն գոյ դուռըն մի կամարակապ, ընդ որ ելանէ չորս աստիճանօք ։ Էր սա դուռն սրբոյ Յարութեան տաճարին, այլ այժմ սենեակ է Յունաց ։ Ի մէջ սոյն դրանն և մերոյս խորանին գոյ բոլորակ խատուտիկ սիւն մի, 'ի սիւնէս մինչև հասանել 'ի մէջ Լուսաւորչի Եկեղեցւոյ դրան՝ և փուշ պսակի խորանի մերձ եղեալ խատուտիկ բոլորակ սիւնն՝ հանդերձ պղղոտայիւ և առաստաղիւ մինչև 'ի յորմն եկեղեցւոյն Յունաց՝ մեր վիճակն է ։ Յամենայն Ուրբաթի աւուր, կամ երբ և կամիմք լուանամք և աւել ածեմք, մինչ 'ի բոլոր Եկեղեցին սուրբ Լուսաւորչին՝ և մինչև 'ի Գիւտ խաչի աստիճանաց սկիզբն ։ Ի վերայ պղղոտայիս գոյ եօթն կանթեղ մեր միայն . քանզի տեղիս բնական վիճակ մեր է ։

Եւ յետ խաչելութեանն Քրիստոսի, առեալ զինուորաց զհանդերձսն, ստամանօր արարին չորս մասունս, քանզի չորք էին զինուորքն . իսկ պատմուճան նորա էր առանց կարանի փորանկեալ ամենևին՝ այսինքն հիւսեալ, արկին վիճակ 'ի վերայ, ում և ելցէ . զի մի պատառեսցեն . Մատթ . Իէ . 35, 36 ։ Մարկ . ԺԵ . 24 ։ Ղուկ . ԻԳ . 34 ։ Յովհ . ԺԹ . 23, 24 ։

Առաջի խորանին յատուկ կանթեղ մի է մշտավառ, և շարան մի բաղկացեալ 'ի հինգ կան-

Թեղէ ունիմք ։ Ի վերայ սորա Լուսաւորչի ե-
կեղեցւոյ դրանն, նա և յաջմէ և յահեկէ դան
երեք պատկեր մեր, որոց առաջին մի մի կանթեղ ։

Յաղագս սուրբ Լուսաւորչի եկեղեցւոյն ձեւոյ, և Գիւտ խաչին ։

Արեւմտեան սատրիճանաւ իջանէ 'ի սուրբ Լուսաւորչի եկեղեցին, բազմութիւնն սատրիճանաց յորմոյ յորմ է տասն ոտնաչափ ։ Չորք կանթեղք կան 'ի վերայ սատրիճանացս, յաջմէ և յահեկէ երկոցունց կանթեղաց 'ի յորմն կան չորեքին պատկերք, իսկ միւս երկոցունց կանթեղաց ոչ գոյ պատկեր ։ Եկեղեցին կառուցեալ կայ 'ի վերայ չորից սեանց կամարակապիւ, և միջոցքն պայծառ լուսաւորօք, որոյ Աւագ խորանն էր յանուն սրբոյ Կենսատու խաչին, և աջակողմեան խորանն՝ յանուն Դեմասայ աջակողմեան աւազակին ։ սակայն աւանդութեամբ ասի՝ թէ 'ի գալն սուրբ Լուսաւորչին մերոյ աստ, յետ այնորիկ նուիրեցաւ յանուն նորա սուրբ Լուսաւորչի՝ Աւագ խորանն սրբոյ խաչին ։ և զնշխարս սրբոյ Կարապետին եդեալ 'ի միւս աջակողմեան խորանն՝ որ էր Դեմասայ, կոչեցաւ յանուն սրբոյ Կարապետին ։

Եւ 'ի ձախակողմն է պատուհան՝ որ հայի 'ի վերայ Գիւտ խաչի տեղւոյն ։ 'ի մէջ պատուհանիս ունիմք զերիս կանթեղս միշտավառ 'ի պա-

տիւ սրբոյ խաչին. և է անդի անթառոյ Հեղի-նէի Թագուհւոյն. յորում նաւակատ բաշխէր ըն-դամենայն առ ամենեսեան, և այսր պեղել դՀողն՝ առ 'ի դտանել դփայտն կենաց. զոր 'ի դտանելն՝ մեռեալ պատանի մի 'ի խուռն բազմութենէ ան-տի, յորոյ վերայ եդեալ զխաչն մի առ մի, և 'ի դնել կենաց փայտին 'ի վերայ դիոյն՝ յարեաւ նոյն ժամայն. զոր տեսեալ ամենեցուն՝ փառս մատուցանէին Որդւոյն Աստուծոյ և երկիրպա-գանէին սրբոյ խաչին. Յայսմաւուր. և Շարական:

Յաջմէ և յահեկէ տաճարանացն են կրկին սենեակք, և 'ի ներքոյ նոցա պահարան և մա-ղաղոյ: Յատուկ մշտավառ և Հասարակ կան-թեղք և շարանք աւելի են քան զհինսուն, և ջահ մի. եթէ կամիմք այլ ևս պատկերս և կանթեղս կախեմք, զի 'ի բնէ մեր է:

Ի ձախմէ եկեղեցւոյս մեռատան տաճարանա-ւ իջանէ 'ի Գիւտ խաչն, որ է վիմափոր այր մի, յաջմէ մերձ է տեղի ձր. խաչին, զոր եգիտ Հեղինէ Թագուհին. և 'ի ձախմէ է խորան Լատինաց, զոր նորոգեցին Լատինք 1857. յորում ունէին փայտեայ մեծ խաչ մի. և 'ի տեղի նորին այժմ կանգնեցին արձան Դշխոյն Հեղինեայ: Ուր միշտ անխափան ընթեռնումք զաւետարան Թափօրին. և յաւուր Գիւտ խաչին, զկենաց փայտն դնեմք անդ՝ 'ի վերայ քարեայ խաչին. և անտի բառ-նայ Հանդիսապետն, և ելանեմք 'ի Թափօր:

Յաւուր Գիւտ խաչին, և 'ի Դաստաւորի կիւ-րակէն 'ի շաբաթ երեկոյս և յառաւօտս՝ ըստ պատշաճի աւուր ժամերգութեան պաշտօնն

աստ 'ի սուրբ Լուսաւորիչն կատարի, և սուրբ Պատարագ մատչի. զկնի այնոցիկ՝ ելանեմք 'ի Թափոր մեծաւ հանդիսիւ շուրջ զկենսատու սուրբ գերեզմանաւն Քրիստոսի։



## Յաղագս փուշ պսակին ։

Ելանելով 'ի Գիւտ խաչէն 'ի վեր՝ դառնալով 'ի ձախմէ չորս ոտնաչափ՝ է խորան փուշ պսակին, կամ սիւն ձաղանացն. զի 'ի տանն Պիղատոսի, 'ի վերայ նորա նստուցեալ զՏէրն մեր, զգեցուցին նմա քղամիդ կարմիր, և փշեղէն պսակ եդեալ 'ի գլուխ նորա, և զեղէգն յաջոյ ձեռին, ծունր իջեալ առաջի, կատակէին զնա՝ և ասէին. ողջ էր Թագաւոր Հրէից. և թքեալ 'ի նա առնուին զեղէգն և ծեծէին զգլուխ նորա. Մատթ. ԻԷ. 27. 30։ Մարկ. ԺԵ. 16. 20։ Յովհ. ԺԹ. 2, 3։ Սա էր յառաջ Հապէշ ազգին. այժմ Ցոյնք ունին զսա։



## Յաղագս սրբոյ Գողգոթային ։

Ի փուշ պսակի խորանէն 40 ոտնաչափ գընալով առ արևմուտս մերձ Պատանատեղւոյն, 'ի ձախմէ 18 աստիճանաւ ելանէ 'ի սբ Գողգոթայ, որոյ երկայնութիւնն է 30 ոտնաչափ, և լայնութիւնն 18. ուղղակի յաջմէ է տեղի խաչելու-

թեան, որ է բոլորակ արձանաթապատ. յորոյ վերայ է սեղան Պատարագամատոյց՝ 'ի վերայ քառից կճեայ պատուական սեանց. յաջմէ և յահեկէ սուրբ Տեղւոյն են պատուեալ վէմք, և կրկին պատկերք սուրբ Աստուածածնի, և Յովհաննու Աւետարանչին, և անհեղանկար սուրբ Պատկեր Խաչելութեանն 'ի միջի. և ունի կրկին կարգօք մշտավառ կանթեղս քան և վեց, և աշտանակս. և 'ի կողմն արևելից և հիւսիսոյ յանկեանն է սեղան մի. և մերձ նորին դուռն մի՝ ընդ որ իջանէ յեկեղեցին Յունաց. և մեծ դուռն մի ևս 'ի մէջ երկրորդ կամարին, որ ելանէ 'ի սենեակն, և այլն:

Դոն կրկին քառակուսի հաստակառոյց սիւնք, որք բաժանեն զտեղի Խաչելութեան և Տարածմանն. հանդէպ առաջին սեանն է խորան Լատինացւոց՝ և 'ի ձախմէ նորին Աւագ խորանն. որոյ առաջի քառակուսի յօրինեալ գունագոյն քարամբք է տեղի Տարածման, յորոյ վերայ ինն կանթեղ մշտավառ, և կից որմոյն ծագէ 'ի ծագ բազմոց, և լուսամուտ մի՝ որ հայի 'ի Սգաւոր սուրբ Աստուածածնի եկեղեցին. տասն և ինն աստիճանաւ իջանէ 'ի յետ կոյս մեծի դրան սրբոյ Յարութեան. ուր գոյ բաժանեալ սիւնն մերոյս վերնատանն. և առ արևելս է դուռն Ադամայ գերեզմանին: Եւ այժմ սոյն սրբազան Տեղւոյս Յոյնք միայն իշխեն՝ և պատարագեն. և չէ մեզ առ այժմ հրաման պատարագելոյ, այլ միայն երթամք յՈւխտ և յերկրպագութիւն, և 'ի Թափօրի ընթեռնումք զաւետարանն:

նորա միով ատրիճանաւ բարձրութեամբ են բազմոց, յորոց ներքոյ են և այլ հինգ գերեզմանք Թագաւորացն Լատինացւոց, և այլն։

# ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ
## Ի ՎԵՐԱՅ ՍՈՒՐԲ ԳՈՂԳՈԹԱՅԻՆ

### Յաղագս սրբոյ Գողգոթային։

Ի գիրս Դաշանց՝ յերես 419 և 420։ Ընդ ՚ի Հաննա պատմութիւն, յերես 81 և 203։ Ընդ ՚ի Հայոց պատմութիւն, Ա. հատոր, յերես 680։ Սեղբեստրոս ասէ, պարգևեցի նորապսակ պատթեւիս մերոյ՝ (այսինքն Գրիգորի լուսաւորչին,) յիշատակ յաւիտենական ազգաց յազգս, ՚ի յերուսաղէմ քաղաքէ՝ իջևանք Հայոց աղօթականացն՝ զվիճակարան սրբոյն Յակոբայ եղբօրն Յովհաննու տեառն Աւետարանչին, և այլն....։ Ընդ պատրաստեցի և տեղի Պատարագի սրբոյն Գրիգորի ՚ի Յարութեան մեծի եկեղեցւոյն՝ զԳողգոթայ խաչելութեան տեղին. և զնարից ղապղէյի գերեզմանին Քրիստոսի, և զմիջի կանթեղն մշտավառ, որք կան երեք կանթեղք ՚ի վերայ գերեզմանին Քրիստոսի. յիշատակ Լատինացւոց, Հայոց, և Հելլենացւոց. զորոյ օրհնական ասէ եղաք ՚ի Զամբռն արքունի. Ի Գիրս Դաշանց։

Ի գիրս Հարցմանց գրէ և Տաթևացի սուրբ Հայրապետն, թէ Աղեքսանդրիանոս և Սեղբեստրոս բաժանեալ զքա Տեղիս Տնօրինական, ետուն Հայոց

զՏէր Յովհաննէս պատրիարքարան . և զԳողգոթայն և զսուրբ Կարապետն, և զնմարան, (այն է Հրեշտակի Վէմն, որ կայ այժմ 'ի ձեռս Խափշտաց։) և արկեալ վիճակս 'ի վերայ Յարութեն (Տաճարին) անկաւ Հայոց, և տրտմեցան ոմանք յազգէ նոցա։ Ապա հեզն յամենայնի սուրբն Գրիգոր ետ նոցա, զի նոքա շինեսցեն ընդարձակ, զի դեռ չէր շինեալ, և սահմանեալ զտեղիսն՝ կախեաց կանթեղս յանուն Ազգացս . և նա խնդրեաց յԱստուծոյ զիջումն լուսոյն 'ի նշան Յարութեանն Քրիստոսի ։ Յիշէ և Կիրակոս պատմիչ, թէ կախեաց զկանթեղս, և այլն ։



Յաղագս որոց Գողգոթայէն՝ զոր առին Վրացիք 'ի ձեռաց մերոց ։

Յամի Տեառն 1434 կամ 1440 . և Հայոց՝ ՊՁԳ կամ ՊՁԸ . Ըւ Հաննա պատմութիւն, յէջս 187 . 226 . և 227 ։ Յաղագս առմանն Գողգոթայի 'ի ձեռաց Հայոց, գրէ որ և նա ինքն հանեալ է 'ի յիշատակարանէ բազմաշխատ Եգիպտացի Մարտիրոս Պատրիարքի Աթոռոյս Երուսաղէմի . նա և յարձանագրութեանց՝ որ 'ի Վերնատունն մեր, առէ ընդօրինակեցի ։

Եգիպտացի ոմն վաճառական Ղայիպլի անուն, գնաց 'ի Վրաց տունն յաղագս վաճառականութեան . և էր սա բարեկամ Սուլթանին Եգիպտոսի՝ Մելէք Աշրաֆայ, որ տիրէր ոք Երուսաղէմի . և մինչ վերոյիշեալ վաճառականն գնաց 'ի Վրաց տունն,

Վրաց խանն Իւօվանէ անուն, իմացեալ զմիա-
ձանկայութիւն վաճառականին առ Սուլթանն
Եգիպտոսի, բազում շողոքորթութեամբ և կա-
շառօք աղերսեաց. զի միջնորդ և բարեխօս լի-
ցի առ Սուլթանն, առնուլ զսուրբ Գողգոթայն
'ի Հայոց՝ և տալ Վրացւոց. և խոստացաւ ամ-
յամէ 'ի Վրաց տանէն յղել քսան ծառայս յաղա-
գս իւրմէ՝ Սուլթանին ընծայ վասն այսր իրի. և
հաւանեցոյց զՂայիպի վաճառականն 'ի ձեռն
բազում կաշառաց կատարել զխնդիրս իւր. և
յուղեալ ընծայիւք և Վրացի ծառայիւք դարձաւ
Ղայիպին յԵգիպտոս, և ծանոյց Սուլթանին զա-
ղերս Վրաց խանին, թէ այսքան ընծայ և Վը-
րացի ծառայս յղեաց. և ամ յամէ յղելոց է
քեզ. և այսպէս խարդաւանեալ էառ զսուրբ
Գողգոթայն 'ի ձեռաց Հայոց՝ և ետ Վրաց. ։
Իսկ Մարտիրոս պատրիարքն Երուսաղէմի էջ
յԵգիպտոս առ Մէլէք Աշրաֆ սուլթանն, և
էառ կրկին զԳողգոթայն. բայց նոյն Ղայիպին
դարձեալ շրջեաց զմիտս Սուլթանին և ետ Վը-
րացւոց. և Մարտիրոս պատրիարքն դարձեալ էջ
յԵգիպտոս, և էառ զԳողգոթայն մինչև ցհինգ
անգամ։ Ապա Սուլթանն ասէ Հայրապետին
մերոյ, թէ Վրաց խանն ինձ քսան ծառայ Վը-
րացի յղէ՝ թող զընծայսն, ուստի չէ հնար տալ
քեզ զԳողգոթայ, այլ երթ և ընտրեա՛ քեզ
տեղի մի 'ի մէջ Յարութեան, և ես վաճառեմ քեզ
իբր Դ—ճ՛ սեպհական, և ոչ ոք յայլոց ազգաց կա-
րիցէ ներհակել քեզ. և Մարտիրոս վարդապետն
եկեալ ընտրեաց զայժմեան Վերնատունն մեր, որ

տուի՝ թէ է տեղի թագաւորաց, և դրամով գը-
նեաց, և արար եկեղեցի. և անուանեաց Երկ-
րորդ Գողգոթայ, և առ նովաւ փոքրիկ մատուռն
Երաշխաւոր սուրբ Աստուածածնին. և յետ սուղ
ժամանակի, այսինքն քսան և հինգ ամաց բնաջինջ
եղեն Վրացիք յԵրուսաղէմէ. և Յոյնք յափշտա-
կեցին զսուրբ Գողգոթայն, և զամենայն վանորայս
նոցա. և ապա Լատինք բռնութեամբ առին 'ի
ձեռաց Յունաց զկէս Գողգոթային՝ և զՏարած-
ման տեղին: Հաննա վարդապետ, յեր. 187. 210 և 224:

Եւ 'ի նոյն պատմէ հանեալ՝ գրի "Առին 'ի
ձեռաց Հայոց 'ի սմին ժամանակի ազգն Վրաց
զտեղին կոչեցեալն Գողգոթայ յԵրուսաղէմ. և
թէպէտ Եգիպտացի Մարտիրոս վարդապետ, որ
յայնժամ վարէր զիշխանութիւն 'ի միաբանն ընդ
Եսայեայ պատրիարքին Երուսաղէմի, բազում
ջանիւք դարձոյց զայն, բայց կրկին էառ առին
նոքա. և ապա ինքն Մարտիրոս վարդապետն գը-
նեաց դրամովք զվերնատուն մի 'ի սուրբ Յա-
րութեան, և արար եկեղեցի, զոր և կոչեաց՝
Երկրորդ Գողգոթայ... Վիրք՝ որք յափշտակեցին
զայն տեղի ո՛չ կարացին վայելել. զի 'ի մեկնել
նոցա յԵրուսաղէմէ, առին Յոյնք զտեղին. և
ապա զկէս Գողգոթային՝ զՏարածման տեղին,
Լատինք յափշտակեցին 'ի ձեռաց Յունաց ն:
Ի պատմութեան Հայոց, Գ. հատ. յերես 473:



# ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ Ի ՎԵՐԱՅ ՍՐԲՈՅ ՅԱՐՈՒԹԵԱՆ ՏԱՃԱՐԻՆ

## Յաղագս դրան Բացման :

Այս՝ երկրորդ Թարգմանն Մեր գայ 'ի գաւառն սուրբ Յարութեան, և ազդ առնէ Տեառն կառավարչին մերոյ այսինքն Ռէիզին : Նա հնչեցուցանեմք նախ զմեր զանգակն, զկնի՝ Լատինաց, յետոյ՝ Յունաց, հուսկ յետոյ զխփաւղաց : Եւ այս հասարակ է, Երբ և պատահիցի, Թէ ընդ առաւօտս, Թէ՝ 'ի տուընջեան, և Թէ ընդ երեկս. և յորում ժամու հանդիպիցի, եԹէ Մեր, եԹէ Յունաց, և եԹէ Լատինաց, այսպէս է ըստ միշտ սովորուԹեանն. բայց 'ի հանդիսաւոր աւուրս, յորս ունիմք գնալ 'ի կատարել զհանդէսս, Թէ Թափօր իցէ և Թէ այլ Պատարագ. Այսպէս է սովորուԹիւն Մեր, Յունաց և Լատինաց. յետ ազդ առնելոյ կառավարչին՝ յաղագս դրան բացմանն, զկնի եկեսցէ կոչնակին մերոյ՝ առնու Լուսարարն մեր զտուփ ընչաղեղոյն, և երԹայ նախ առ Լատինաց լուսարարն, և բացեալ զտուփն՝ տայ նմա զդեղոյն, որով յայտ առնէ նմա զբացումն դրանն, և ապա գնայ առ լուսարարն Յունաց՝ և տայ նմա նոյնպէս. ըստ այսմ օրինակի առնեն և մեզ Յոյնք և Լատինք ըստ միշտ սովորուԹեանն :

Ապա լուսարարն կամ սպասաւոր կառավարչին մերոյ տայ զաւանդութիւն արտաքս · փակէ ըզփողքն բոլորշի լուսամուտն զդրանն, և քանոց ըզփակս և զնիգս ՚ի ներքուստ, զբազմոցն և ըզտախտակն որ կայ ՚ի յետոյս դրանն ՚ի բաց առնու անտի · և սկսանի մաքրել զտեղին բարապանաց, և սփռել զգորգս, դնել զբարձս, և զայլ իրս կարևորս, և վառարանաւ հուր դնել անդ ՚ի պատրաստ · զի ՚ի բանիլ դրանն՝ սփութանակի եկեսցեն սուրճս · նոյնպէս պարտ է առնել և զկնի փակման դրանն, առնուլ զաւանդութիւն ՚ի ներքս, փակել զնիգս երկաթի ՚ի ներքուստ, բանալ զբոլորակ լուսամուտն, զենեանդ զբազմոցն, և աւել ածել և մաքրել:

Գիտելի է, զի եթէ երկոքին ազգք բանայցեն զդուռն, ընկերութեամբ սփռեն զտեղին հաւասար · ապա եթէ երեքին ազգք ՚ի միասին ունին բանալ, զգորգն Մեր ՚ի մէջ Լատինաց և Յունաց կարգեալ պարտիմք սփռել, և զծախսն դրանն ՚ի միասին հաւասար առնեմք:



## Յաղագս Ծննդեան և Տեառնընդառաջին Լատինաց ։

Ի 13 Դեկտեմբերի ամսոյն, յաւուր տօնի Ծննդեան Լատինաց, նա և Տեառնընդառաջին նոցա, թէ Մեզ և թէ Յունաց ոչ գոյ սովորութիւն զաշտանակս բառնալ, կամ զմոմս և զկանթեղս լուցանել, այլ միայն զաւուրս Պարտիզի կանթեղն Մեր փոխեալ, զարծաթին կախեմք։ Եւ յայսօրիկ աւուրս դուռն բառնալ ոչ գոյ մեզ և Յունաց սակս պատարագի, զի նոցա է յատուկ հանդէսն. յայսմ գիշերի Լատինն նախ քան զՅունաց պատարագն մի անգամ և եթ ձայնաւոր պատարագէ 'ի սուրբ Գերեզմանն՝ և զկնի խնկարկութիւն առնէ. և յետ այնուցոյն պատարագէ և ապա Մեք. և զկնի թիւ պատարագ կամ ձայնաւոր 'ի վերայ Գերեզմանին Քրիստոսի առնէ Լատինն։ Եւ յետ այնորիկ ամենայն կարգաւորք Լատինաց երեք երեք անգամ թիւ պատարագեն 'ի վերայ սուրբ Գերեզմանին, նոյնպէս և յաւուր Տեառնընդառաջին, և ելանեն 'ի մեծահանդէս թափօր շուրջ զԳերեզմանաւ Տեառն երիցս, և այլն. որ ըստ կարգի, և արձակին.



Յաղագս ծննդեան Յունաց ։

Ի 25 Դեկտեմբերի ամսոյն, 'ի տօնի ծննդեանն 'ի գիշերի ոչ Պատարագն ըստ կարգի է. զկնի ըստ խորհրդոյ ելանեն Յոյնք 'ի Թափօր շուրջ զսուրբ Գերեզմանաւն երիցս, գան 'ի Պատանատեղին և անտի գնալով շուրջ զտեղեաւ Հանդերձի բաժանման և Պարափըղին, եկեալ մտանեն յեկեղեցին իւրեանց, ապա Հարկանեն ժամշու կոչնակին Մեր, և կատարեալ զխորհուրդ սուրբ Պատարագին 'ի վերայ կենդանատու Գերեզմանին ։

Յաղագս ամանամտի Յունաց ։

Գիտելի է, զի Յոյնք յամենայն ամանամտի օրհնեալ ջուր ամանաւ առեալ 'ի ձեռին, և մշտկաւ սրսկեն յամենայն տեղիս, և գան 'ի սենեակն մերս կառավարչին ըստ սովորութեան, շրջեցուցանելով ընդ ինքեանս զգանձանակս, զորս շահել պարտ է ։

Յաղագս ծննդեան Ճրագալուսոյ Մերոյ ։

Ի 5 Յունվարի, 'ի մերս Հրաշափառ ծննդեանն Քրիստոսի յերեկոյի Ճրագալուցին ժամերգութեան պաշտօնն կատարի 'ի Վերնատանն։ Եւ զկնի Լատինաց բուրվառին մինչ ելեալ 'ի սուրբ Գերեզմանէն գնայ յիւր վիճակն. յայն-

ժամ գնացեալ 'ի սուրբ Գերեզմանն պատրաստ-
ուեմք զանձամբն 'ի ներքս, և առաջի մեր դրանն
ըստ միշտ սովորութեանն նախ հարկանի կոչ-
նակն մեր, և գնամք 'ի դուռն կենդանարար սուրբ
Գերեզմանին, և առի ճաշու։ Իսկ պատարագիչն
զգեստաւորի 'ի սենեակն կառավարչին մերոյ,
և ապա "Խորհուրդ խորին" ասեմք, առ 'ի կատա-
րել զխորհուրդ սուրբ Պատարագին։ Իսկ զկնի
պատարագին շուրջ զԳերեզմանաւն գնամք 'ի
սենեակն կառավարչին, ասելով Շարական՝ գէ.
"Խորհուրդ մեծ և սքանչելի", և այլն։

## Յաղագս տօնի Ծննդեան Տեառն մերոյ։

Ի 6 Յունվարի՝ 'ի գիշերի սրբոյ Ծննդեան, ըստ օրում Յունաց Մկրտութեան և Յայտնութեան տօն է, վասն որոյ նոքա 'ի գիշերի պատարագի կոչնակ ոչ հարկանեն ըստ կարգի, այլ 'ի առաւօտեան. ուստի պարտիմք զկնի Լատինաց զանգակին՝ հարկանել անմիջապէս զմեր ճաշու կոչնակն, և զպատարագն մատուցանել 'ի վերայ սրբոյ Գերեզմանին ըստ սովորութեանն, և յետ այնու կատարել զխորհուրդ Մկրտութեան առաջի սուրբ դրանն։ Ապա ելանեմք 'ի Թափօր շուրջ զԳերեզմանաւն երիցս. գնամք 'ի սուրբ Պատանատեղին, և դառնամք 'ի դուռն սրբոյ Գերեզմանին. ուր երգեմք "զՏէր երկնից", և շուրջ զԳերեզմանաւն գամք 'ի յՈւ ժամաթափման տեղին ուր երգեմք "զՓառս 'ի բարձունս", և այլն. որ զկնի։

Եւ Յոյնք յիններորդ ժամու գիշերոյն բանան զսուրբ Յարութեան դուռն , և արկանի գորգ 'ի սուրբ Պատանատեղին , և դնեն հանդիսիւ 'ի ներքս , և այլն . ըստ կարգի : Վասն որոյ բանամք Մեք և Լատինք զաշտանակս սուրբ Գերեզմանին և զՊատանատեղւոյն և լուցանեմք . բայց զշարան կանթեղս լուցանել Մեզ և Լատինաց չէ սովորութիւն , այլ միայն զեօթն կանթեղսն մեր լուցանեմք , որք են առաջի Հանդերձ բաժանման խորանին 'ի վերայ պողոտային . իսկ հանդիսաւոր պատարագ նոցա 'ի վերայ սուրբ Գերեզմանին է , բայց զխորհուրդ Մկրտութեան ունին կատարել յեկեղեցւոջ իւրեանց զկնի պատարագին :

Ի 13 Յունվարի , 'ի տօնի ութօրեայ Աստուածայայտնութեանն գիշերային ժամերգութիւնն մեր պաշտի 'ի մէջ Յունաց . Այս հանդիսիւ գնամք 'ի սուրբ Յարութիւն . արկանի գորգ առաջի սուրբ Պատանատեղւոյն , և հանդիսաւոր սուրբ Պատարագն մատուցանի 'ի վերայ կենսատու սրբոյ Գերեզմանին . Վասն որոյ Յոյնք և Լատինք բանան զաշտանակս Պատանատեղւոյն՝ և զսուրբ Գերեզմանին՝ և լուցանեն , որպէս և Մեք վասն նոցա : Այս հանդիսաւոր սուրբ Պատարագն Մեր՝ է փոխանակ Յունաց հանդիսաւոր պատարագին՝ որ 'ի 6 Յունվարի .

### Յաղագս նորոգ հանդիսին Յանայ, որ եղեւ յամի Տեառն 1850։

Ի 18 Յունվարի, 'ի տանի հայրապետացն Աթանասի և Կիւրղի զարդարեն զճակատն Գերեզմանին և լուցանեն զկանթեղս. յերեկոյին զոյգ կոչնակ և զոյգ բուրվառ և հանդիսաւոր ժամերգութիւն տանեն։ Իսկ 'ի գիշերի պատարագն բառ կարգի է. և ընդ առաւօտն հանդիսաւոր պատարագն 'ի մեծանին խուրանից. այս հանդէսս 'ի պատիւ Պատրիարքի նոցա է։



### Յաղագս ծաղկազարդին Լատինացւոց։

Պէտս գիտել պարտ է, զի ոչ միշտ հանդէս այս ընդ Մեզ 'ի միասին Զատիկն նոցա, որպէս յամի Տեառն 1854, զատիկն նոցա եղեւ 'ի մեր ծաղկազարդին. և 1855, սուրբն ընդ մեզ 'ի միասին. և 1856, զատիկն նոցա եղեւ յԱնառակի կիւրակէն, այսպէս յերեք տարին միանգամ լինի ընդ մեզ զատիկն, ուստի զանազանին հանդէսք նոցա 'ի մերոյս։ Եթէ չիցէ ընդ մեզ զատիկն նոցա, այսպէս առնել պարտիմք։ Իշաբաթ օրն՝ յերրորդ ժամու տանուտեան գնամք 'ի Թափոր նախ քան զլատինսն. ապա եթէ չիցէ նոցա հանդէս, յետ նոցա երթամք 'ի Թափոր ըստ սովորութեանն։ Եւ ապա բանամք զաշտանակս զՊատանատեղւոյն և զորբոյ Գերեզմանի դրա-

մնացորդեցաւ պատարագել 'ի վերայ Քրիստոսի կենդանւոյ Գերեզմանին ։ Բայց Նախ՝ Յոյնք, ապա Մեք, յետոյ Լատինք ։

Այլ 'ի յաւելուածոյ հանդիսաւոր աւուրց՝ եթէ հանդէս աւուրն Յունաց իցէ, նախ Մեք Պատարագեմք, ապա Լատինք, յետոյ Յոյնք՝ հանդիսաւոր ։ Իսկ եթէ Մերն իցէ հանդէսն՝ ըստ պայմանեալ կանոնադրութեանց, նախ՝ Յոյնք և Լատինք պատարագեն . յետոյ Մեք՝ հանդիսաւոր ։ Այլ եթէ Լատինաց իցէ հանդէսն . նախ Յոյնք և Մեք պատարագեմք, յետոյ Լատինքն՝ հանդիսաւոր ։

Յայսպիսի աւուրս՝ միայն հանդիսականքն զարդարեն զսուրբ Գերեզմանն շուրջանակի ըստ հաճութեան ։ Այլ եթէ 'ի միասին կատարի հանդէսն, որպէս Ծաղկազարդ, Զատիկ, ըստ յառաջասաց կարգադրութեանն պատարագեմք, և ընկերութեամբ հաւասար զարդարեմք, թէ զսուրբ Գերեզմանն, թէ զճակատ դրանն, և թէ զկաթուղիկէն և զշրջապատս Նորա ։ Այլ իւրաքանչիւր ազգ՝ 'ի մի մի շաբաթ աւել ածէ, և լուանայ զսուրբ Գերեզմանն՝ արտաքին շրջանակօք, նմանապէս և զս̃բ Պատանատեղին 'ի մի մի շաբաթ աւել ածեմք և լուանամք, և զծածկոյթս սփռեմք 'ի փառս մեծ վայելչութեանն Քրիստոսի, որ վասն փրկութեան մերոյ չարչարեցաւ, մեք մաքուր և պայծառ պահեսցուք զանօրինական սուրբ Տեղիսն իւր, և փառաւորեսցուք զնա գոհութեամբ և երգօք հոգևորօք, զի և նա մաքրեացէ զմեզ յամենայն արատոյ մե-

ղաց, և անձանց շնորհօքն լուսաւոր և պայծառ պահելով զհոգիս մեր, փառաւորեսցէ զմեզ անպատում փառօք իւրովք յաւիտեան, ընդ այնմ զփառաւորիչս իւր փառաւորեսցի ։

Եւ փոխանակ այսր հանդիսի մերում՝ յառաջին շաբաթուն, որ է Նոր Կիւրակէ, հանդիսաւոր պատարագ ունին Ցոյնք 'ի սուրբ Գերեզմանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ ։



# ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ

## ՄՇՏՆՋԵՆԱՒՈՐ ՇԱԲԱԹԱԿԱՆ ԹԱՓՕՐԻ

## ՍՐԲՈՑ ՅԱՐՈՒԹԵԱՆ ՏԱՃԱՐԻՆ.

*Որ յԱստուածընկալ և 'ի շնորհազարդ Տեղւոջ չարչարանացն Քրիստոսի, ըստ կարգադրութեան առաջադրութեանց Ազգային նախնեաց մերոց.*

---

### Ուրբաթ.

Յիններորդ ժամու զկնի Երեկոյի կոչնա-կին՝ գումարին Եկեղեցականք առաջի Իւղա-թափման տեղւոյ. մինչ հասանի Լատինաց թա-փօրն 'ի Փուշ պսակն, առնու շուրջառ մեր թա-փօրապետն միայն, վարդապետք և քահանայք փիլոնաւ, զոյգ դպիր լուսակալք, և 'ի ձեռս թափօրականաց վառեալ մոմ. իսկ Նախասարկաւագն զգեցեալ շապիկ՝ ուրար զուսովն, սաղաւարտ 'ի գլուխն, բուրվառ և խնկամանս 'ի ձեռին.

1 Նաէ 'ի ձայն, Եւ կս խաղաղութեան զսէր։

Թափօրապետն. Օրհնութիւն և փառք հօր։

Եւ արկանէ խունկ 'ի բուրվառն, և գնան զոյգ զոյգ 'ի մէջ Բանտին, ասելով Շարական՝ Բյ. «Նա-ծածկոյթութեամբն», և այլն։

Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան Ղուկ. ԻԳ. 17. «Զի հարկ էր մի մի, վերջ 23. 'ի խաչ հանել»։

Սարկաւագն, Փառք քեզ տէր. Խնդրեսցուք։

Դպիրն, Կեցո տէր. Տէր ողորմեա։

Թափօրապետն, Քում ամենազօր և հրաշալի։

2 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, եւ ես խաղաղութե:
Թափօրապետն, Օրհնութիւն և փառք հօր:
Այս անուն երկաթն 'ի տեղին ուր զհանդերձն
Քրիստոսի բաժանեցին, ասելով Շարական՝ դէ.
«Զ.ահն լուսոյ յառաւօտին», և այլն:
Սարկաւագն՝ Որթի: Աւետարան Յովհ. ԺԹ. 23.
«Իսկ զինուորք, մինչ 24. զայս ինչ գործեցին»:
Սարկաւագն, Փառք քեզ տէր. Խնդրեսցուք:
Դպիրն, Կեցո՛ տէր. Տէր ողորմեա՛:
Թափօրապետն, Քում ամենազօր և հրաշալի:

3 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, եւ ես խաղաղութե:
Թափօրապետն, Օրհնութիւն և փառք հօր:
Այս անուն բլանեն 'ի Գիւղ խաչ, ասելով Շա-
րական՝ այ. «Հրաշակերտ և զօրեղ», և այլն:
Սարկաւագն՝ Որթի: Աւետարան Մարկ. ԻԴ. 27.
«Զի որպէս փոյլակն, մինչ 29. չարչարեցին»:
Սարկաւագն, Փառք քեզ տէր. Սուրբ խաչիւս:
Դպիրն, Կեցո՛ տէր. Տէր ողորմեա՛:
Թափօրապետն, Պահպանեա՛ զմեզ Քրիստոս:
Այս աւետարան միշտ 'ի Թափօրին՝ առաջի Լա-
տինացւոց խորանին ընթեռնումք:

4 Սարկաւագն՝ 'ի ձայն ասէ, եւ ես խաղաղութե:
Թափօրապետն, Օրհնութիւն և փառք հօր:
Այս անուն եղանեն 'ի սուրբ Լուսաւորչի եկեղե-
ցին մեր՝ ասելով Շարական, դէ. «Մարգարէ-
ից գերագոյն»: Այս աւետարան ընթեռնումք
առաջի սուրբ Կարապետի սեղանոյն:
Սարկաւագն՝ Որթի: Աւետարան, Յովհ. Ա, 29.
«Ի վաղիւն անդր ետես, մինչ 31. սա է որդին Այ»:

Սաղմոսագն, փառք քեզ տէր. Մէ ճգնաւորք:

Թափօրայեփն, Որ ընտրեցեր և ընկալար. և այլն:

5 Սաղմոսագն՝ առէ 'ի ձայն, Եւ ես խաղաղութեն:

Թափօրայեփն, Օրհնութիւն և փառք հօր:

Այս անուն եղանեն 'ի փուշ պսակ, ուր է սիւնն՝ յոր կապեցին զՔրիստոս 'ի տանն Պիղատոսի, ասելով Հարականն՝ դյ. "Նայսօր 'ի կատարումն:

Սաղմոսագն՝ Որթի: Նուեսարան Յովհ. ԺԹ. 2. "Եւ զինուորաց արարեալ, մինչ Ծ. ահա այրդ-ցձեղ", և այլն:

Սաղմոսագն, փառք քեզ տէր: Խնդրեսցուք:

Պղերն, Կեցն տէր. Տէր ողորմեա:

Թափօրայեփն, Քում ամենազօր և հրաշալի:

6 Սաղմոսագն՝ առէ 'ի ձայն, Եւ ես խաղաղութեն:

Թափօրայեփն, Օրհնութիւն և փառք հօր:

Այս անուն եղանեն 'ի սուրբ Գողգոթայ, ասելով Հարականն՝ դհ. "Ի յուրբաթու ժամ յերրորդ":

Սաղմոսագն՝ Որթի: Նուեսարան Յովհ. ԺԹ. 17. "Եւ նոքա առեալ, մինչ 20. և յունարէն":

Նա ապա 'ի ծունկս անկեալ ասեն, Սուրբ ած՝ երիցս, առանց փառաւորեալի. և ասի կից՝ Տէր ողորմեա: Երգ:

Սաղմոսագն, փառք քեզ տր. Սուրբ խաչիւս:

Պղերն, Կեցն տէր. Տէր ողորմեա:

Թափօրայեփն, Պահպանիչ և յոյս հաւատոյ". Կամ Առաջի պատուական, և այլն:

7 Սաղմոսագն՝ առէ 'ի ձայն, Եւ ես խաղաղութեն:

Թափօրայեփն, Օրհնութիւն և փառք հօր:

Իսկ անտի իջանեն 'ի սուրբ Պատանատեղին՝ ա- սելով Շարական, բէ. «Պարգևատուն», և այլն։

Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան Յովհ. ԺԹ. 38. «Յետ այսորիկ աղաչեաց», Վերջ 42. եդին զՅիսուս»։

Սարկաւագն, փառք քեզ տէր. խնդրեսցուք։

Դպիրն, կեցո՛ տէր. Տէր ողորմեա՛։

Թափօրապետն, Քում ամենազօր և հրաշալի։

Թափօրապետն կանգնի 'ի գլուխ սուրբ Պատա- նատեղւոյն՝ 'ի կողմն սուրբ Գողգոթային։

8 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղութեան։

Թափօրապետն, Օրհնութիւն և փառք հօր։

Իսկ անտի երթան 'ի սուրբ Գերեզմանն՝ ասելով Շարական, ակ. «Առաքեցար 'ի հօրէ», և այլն։

Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան, Յովհ. Ի. 10. «Բայց Մարիամ», Վերջ 16. վարդապետ»։ Մինչ բազմութիւն իցէ՝ առաջի դրանն ընթեռ- նումք զաւետարանն, ապա թէ ոչ՝ 'ի ներքս 'ի սուրբ Գերեզմանն։

Դպիրքն՝ ասեն 'ի ձայն, Տէր ողորմեա՛։ Երգ։

Սարկաւագն, փառք քեզ տէր. խնդրեսցուք։

Դպիրն, կեցո՛ տէր. Տէր ողորմեա՛։

Թափօրապետն, Քում ամենազօր և հրաշալի։

9 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղութեան։

Թափօրապետն, Օրհնութիւն և փառք հօր։

Իսկ ապա շուրջ զԳերեզմանաւ Տեառն՝ գան 'ի յԻւղաթափման տեղին սրբուհւոյ Աստուածածնին, ասելով Շարական՝ տկ. «Մերձ սիրով»։

Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան Յովհ. ԺԹ. 25. «Եւ կային առ խաչին», Վերջ 30. զհոգին»։

Սարկաւագն, փառք քեզ Տէր. Սբ զմծածինն։
Կոչերն, կեցո Տէր. Տէր ողորմեա։
Թափօրականն, Ընկալ Տէր զաղաչանս մեր։
Օրհնեալ Տէր մեր. Հայր մեր որ յերկինս.
Օրհնեալք եղերուք 'ի շնորհաց սբ հոգւոյն։

## Շարական։

Օծնի Եկեղեցւոյ կոչնակին, մինչ Լուսինաց Թափօրն ելանէ 'ի Գիւտ խաչէն 'ի փուշ պսակն հասանի.

1 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղութեան։
Թափօրականն, Օրհնութիւն և փառք Հօր։
Սոյն արկանէ խունկ 'ի բուրվառն. և գնան 'ի սբ Բանան՝ ասելով Շարական, Բյ. "Ի գիշերին յորում մատնիւր", և այլն։
Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան, Մարկ. ԺԵ. 1. "Եւ վաղվաղակի, մինչ Ծ. յայտ պիղատոսի"։
Սարկաւագն, փառք քեզ Տէր. Խնդրեսցուք։
Կոչերն, կեցո Տէր. Տէր ողորմեա։
Թափօրականն, Քում ամենազօր և հրաշալի։

2 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղութեան։
Թափօրականն, Օրհնութիւն և փառք Հօր։
Սոյն անուի երթան 'ի Հանդերձ բաժանումն, ասելով Շարական՝ Դկ. "Սամկական", և այլն։
Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան Ղուկ. ԻԳ. 34. "Հայր թող դոցա, մինչ 38. սա է արքայն հրէից"։

Սարկաւագն, փառք քեզ Տէր. Խնդրեսցուք:

Դպիրն, կեցո՛ Տէր. Տէր ողորմեա՛:

Թափօրապետն, Քում ամենազօր և հրաշալի:

3 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն; Եւ ևս խաղաղութե՜:

Թափօրապետն, Օրհնութիւն և փառք Հօր:

Այս անուն լինանեն 'ի Գիւտ խաչն, ասելով Շարականն՝ այ. «Անճառելի երևումն», և այլն:

Սարկաւագն՝ Որթի: Աւետարան Մատթ. ԻԴ. 30.

«Եւ ապա երևեսցի», մինչ 32. ամառն:

Սարկաւագն, փառք քեզ Տէր. Սուրբ խաչիւս:

Դպիրն, կեցո՛ Տէր. Տէր ողորմեա՛:

Թափօրապետն, Առաջի պատուական. կամ Պահպան»:

4 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղութե՜:

Թափօրապետն, Օրհնութիւն և փառք Հօր:

Այս անուն երանեն 'ի սուրբ Լուսաւորչի եկեղե-ցին մեր՝ ասելով Շարականն, դյ. «Հրաշափառ Աստուած», և այլն: Զայս աւետարան ընթեռ-նումք առաջի սուրբ Լուսաւորչի սեղանոյն:

Սարկաւագն՝ Որթի: Աւետարան, Յովհ. Ժ. 14.

«Ես եմ հովիւն», մինչ 16. և մի հովիւ»:

Սարկաւագն, փառք քեզ Տէր. Մեք ճգնաւորօքն:

Թափօրապետն; Որ ընտրեցեր և ընկալար:

5 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ ևս խաղաղութե՜:

Թափօրապետն, Օրհնութիւն և փառք Հօր:

Այս անուն երանեն 'ի փուշ պսակն, ասելով Շարականն՝ դհ. «Այսօր որ 'ի հրեղէն», և այլն:

Սարկաւագն՝ Որթի: Աւետարան Մարկ. ԺԵ. 16.

«Եւ զինուորքն», մինչ 20. հանեցեն զնա»:

Սարկաւագն, փառք քեզ Տէր. Խնդրեսցուք:

Դպիրն. Կեցո́ տէր. Տէր ողորմեա́.

Թուափորպետն. Քում ամենազօր և հրաշալի։

6 Սարկաւագն՝ առէ 'ի ձայն, Եւ եւս խաղաղութե։

Թուափորպետն, Օրհնութիւն և փառք հօր։

Եւ անտի ելանեն 'ի սուրբ Նշանն Գողգոթայ՝ ասելով Շարական, դէ. « Ստեղծեալ ծառոյ »։

Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան Ղուկ. ԻԳ. 33. « Եւ իբրև չոգան 'ի տեղին, վերջ 38. արքայն հրէից »։

Եւ 'ի ծունկս անկեալ առեն, Սուրբ աստուած՝ երիցս։ Եւ կից ընդ նմին 'ի ձայն առեն, Տէր ողորմեա́։ Երգ։

Սարկաւագն, Փառք քեզ տէր. Ալ. խաչես։

Դպիրն, Կեցո́ տէր. Տէր ողորմեա́։

Թուափորպետն, Առաջի պատուականն, և այլն։

7 Սարկաւագն՝ առէ 'ի ձայն, Եւ եւս խաղաղութ."։

Թուափորպետն, Օրհնութիւն և փառք հօր։

Եւ անտի իջանեն 'ի սուրբ Պատանատեղին՝ ասելով Շարական, բէ. « Կենդանիքն յաւիտենից »։

Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան Ղուկ. ԻԳ. 50. « Եւ ահա այր մի, վերջ 54. և շաբաթ լուսանայր »։

Սարկաւագն, Փառք քեզ տէր. Խնդրեսցուք։

Դպիրն. Կեցո́ տէր. Տէր ողորմեա́։

Թուափորպետն, Քում ամենազօր և հրաշալի։

8 Սարկաւագն՝ առէ 'ի ձայն, Եւ եւս խաղաղութե։

Թուափորպետն. Օրհնութիւն և փառք հօր։

Եւ անտի երթան 'ի սուրբ Գերեզմանն Քրիստոսի, ասելով Շարական՝ ոէ. « Յարուցեալ »։

Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան, Մարկ. ԺԶ. 1. « Եւ իբրև էանց, վերջ 6. ուր եդին զնա »։

Դպիրն, ձայնաւոր՝ Տէր ողորմեա։ Երգ։

Սարկաւագն, խնդրեսցուք հաւատով միաբան։

Դպիրն, Կեցո՛ Տէր։ Տէր ողորմեա։

Թափօրապետն, Քում ամենազօր և հրաշալի։

9 Սարկաւագն՝ ասէ ՚ի ձայն, Եւ ևս խաղաղութեան։

Թափօրապետն, Օրհնութիւն և փառք Հօր։

Եւ այս շուրջ զԳերեզմանաւ Տեառն՝ գան ՚ի յՈւխտաթափման սուրբ Տեղին ՚ի վիճակն մեր, ասելով Շարական, “Երևեցար խնկաբերից”։

Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան Յովհ. ԺԹ. 25. “Եւ կային, մինչ 30. աւանդեաց զհոգին”։

Սարկաւագն, փառք քեզ Տէր. Ամ զածածինն։

Դպիրն, Կեցո՛ Տէր. Տէր ողորմեա։

Թափօրապետն, Ընկալ Տէր զաղաչանս մեր։ Օրհնեալ Տէր մեր. Հայր մեր որ յերկինս. Օրհնեալ եղիցի ՚ի շնորհաց սբ հոգւոյն։

Կիւրակէ։

Մինչ Լատինացւոց Թափօրն գայ ՚ի փուշ պսակն.

1 Սարկաւագն՝ ասէ ՚ի ձայն, Եւ ևս խաղաղութեան։

Թափօրապետն, Օրհնութիւն և փառք Հօր։

Եւ որկանէ խունկ ՚ի բուրվառն. և գնան զոյգ զոյգ ՚ի սուրբ Բանտն, ասելով Շարական՝ Բյ. “Որ Թագաւորդ ես Թագաւորաց”։

Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան Մատթ. ԻԷ. 11. “Եւ եկաց առաջի, մինչ 17. մատնեցին զնա”։

Սարկաւագն, Փառք քեզ տէր. խնդրեսցուք։
Դպիրն, կեցո տէր. Տէր ողորմեա։
Թափօրապետն, Քում ամենազօր և հրաշալի։

2 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ եւս խաղաղութեան։
Թափօրապետն, Օրհնութիւն և փառք հօր։
Եւ անտի երթան 'ի տեղին, ուր զհանդերձն Քրիստոսի բաժանեցին, ասելով Շարական՝ Տէ. «Մերկանանքն. կամ Պատկառանօք։
Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան Մատթ. իէ. 35.
«Եւ հանեալ զնա, վերջ 40. էջ 'ի խաչէդ»։
Սարկաւագն, փառք քեզ տէր. խնդրեսցուք։
Դպիրն, կեցո տէր. Տէր ողորմեա։
Թափօրապետն, Քում ամենազօր և հրաշալի։

3 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ եւս խաղաղութեան։
Թափօրապետն, Օրհնութիւն և փառք հօր։
Եւ անտի իջանեն 'ի Գիւտ խաչն, ասելով Շարական՝ այ. «Որ զնախնոյն առիթ»։
Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան Մատթ. իդ. 32.
«Ի թզենւոյ անտի, վերջ 36. բայց միայն հայր»։
Սարկաւագն, փառք քեզ տէր. Սուրբ խաչիւս։
Դպիրն, կեցո տէր. Տէր ողորմեա։
Թափօրապետն, Պահպանեա. կամ Առաջի պատ"։

4 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ եւս խաղաղութեան։
Թափօրապետն, Օրհնութիւն և փառք հօր։
Եւ անտի ելանեն 'ի սուրբ Լուսաւորչի եկեղեցին մեր, ասելով Շարական՝ Տէ. «Որ յարուցեալն»։ Զայս աւետարան ընթեռնումք առաջի սուրբ կարապետի սեղանոյն։
Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան Յովհ. գ. 22.

Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան Մարկ. ԺԵ. 42.
"Եւ իբրեւ երեկոյ եղեւ, վերջ 47. ուր եդաւ"։
Սարկաւագն, փառք քեզ տէր. խնդրեսցուք։
Դպիրքն, Պեցն տէր. Տէր ողորմեա։
Թափօրայեքն, Քում ամենազօր եւ հրաշալի։

8 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ եւս խաղաղութե։
Թափօրայեքն, Օրհնութիւն եւ փառք հօր։
Եւ անտի երթան 'ի սուրբ Գերեզմանն Քրիստոսի՝ ասելով Շարական, այլ. "Սքանչելի"։
Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան Մատթ. ԻԸ. 1.
"Եւ յերեկոյի շաբաթուն, վերջ 6. ուր կայր"։
Թափօրականքն, ձայնիւ՝ Տէր ողորմեա։ Երգ։
Սարկաւագն, փառք քեզ տէր. խնդրեսցուք։
Դպիրքն, Պեցն տէր. Տէր ողորմեա։
Թափօրայեքն, Քում ամենազօր եւ հրաշալի։

9 Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ եւս խաղաղութե։
Թափօրայեքն, Օրհնութիւն եւ փառք հօր։
Եւ ապա շուրջ զԳերեզմանաւ Տեառն՝ գան 'ի յՈւժաթափման տեղին սրբուհւոյ Ածածնին՝ 'ի վիճակն Մեր, ասելով Շարական՝ "Երեւեցար"։
Սարկաւագն՝ Որթի։ Աւետարան Յովհ. ԺԹ. 25.
"Եւ կային առ խաչին, վերջ 30. զհոգին"։
Սարկաւագն, փառք քեզ տէր. Առ զԱծածինն։
Դպիրքն, Պեցն տէր. Տէր ողորմեա։
Թափօրայեքն, Ընկալ տէր։ Օրհնեալ տր մեր. Հայր մեր որ յերկինս. Օրհնեալք եղբարք։



# ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ

## Ի ԴՐԱՆԷ ՍՐԲՈՑ ՅԱՐՈՒԹԵԱՆ ՏԱՃԱՐԻՆ ՄԻՆՉԵՒ Ի ՍԻՈՆԻ ՎԱՆՈՑ, ԵՒ Ի ՊՐՈՊԱՏԻԿԷ ԱՒԱԶԱՆՆ



ՍՐԲՈՑ Յարութեան դաւթի արևելեան յանկեանն գոյ փոքրիկ դուռն մի՝ ընդ որ մտանէ 'ի խաղախորդարան, այսինքն փաղախանոյն. և է 'ի ձեռս Այլազգեաց, և յոյժ անմաքուր. զոր մաւն ինչ 1858 գնեցին Յոյնք, և շինեցին իբր վաճառանոց: Յաջմէ կողմանէ առ հիւսիս՝ է մեծագոյն աւերակ մի, որ է բանտ առաքելոյն Պետրոսի, որ գրի 'ի Գործ. ԺԲ. 3—8. և ուղղակի գնացեալ մինչ 'ի յեզր խաղախանոցին, դառնալով 'ի ձախմէ 'ի ներքոյ կամարին 'ի մութ շուկայն, 'ի կէս կամարին յաջմէ պողոտային գնայ 'ի պալատն Հեղինէ դշխոյին, և է 'ի ձեռս Այլազգեաց, ուր գոն յոյժ մեծամեծ կաթսայք՝ այսինքն խալկին. յորս ապուր եփեալ բաժանեն աղքատաց և տէրվիշաց իւրեանց: Իսկ 'ի ձախմէ յանկեան փողոցին գոյ հնաշէն մզկիթ մի, որ է դատարան Այլազգեաց. այն է տուն Մատթէոսի աւետարանչին. ուր զսուրբ Աւետարանն գրեաց 'ի լեզու Եբրայեցւոց: Այսու ճանապարհաւ ևս գնամք 'ի Գերեզմանն սուրբ Աստուածածնի. սակայն չէ սովորական: Իսկ ուղղակի անցեալ մինչև ցեզր մութ շուկային 'ի քա-

ուղեւորի Ճանապարհն, առ հիւսիս գնայ 'ի դու-
ռըն Դամասկոսի, զոր Արաբացիք կոչեն՝ պապըլ-
տոմա, այսինքն դուռն սեան. քանզի գոյ անդ
'ի ձախմէ կրպակ մի, որոյ յետուստ կողման
կանգնեալ կայ քարեայ սիւն մի՝ իբր երեք կան-
գնաչափ, որում սոսի սիւն վճռոյ. այն է սիճիլ
գաբոտի, որ սոսա հաստատ վճիռ մահու Անմահ
Փրկչին մերոյ Յիսուսի. և սոսա գրեցաւ 'ի վե-
րայ տախտակին՝ "Յիսուս Նազովրեցի Թագա-
ւոր Հրէից. Եբրայեցերէն, Դաղմատերէն, և
Յունարէն գրով". Յովհ. ԺԹ. 19, 20:

Զայն տախտակ եդին ևս 'ի գլուխ սեանս
այսմիկ, զի երթևեկք ընթերցցին յիւրաքան-
չիւր լեզու: Նոյն դուռնս այս գոլով յեզր քա-
ղաքին, յորմէ ելանէր արտաքս 'ի լեառն Գող-
գոթայ, որ էր տեղի կառափելոյ. ըստ աւան-
դութեան Հրէից՝ հանեալ զմահապարտսն ար-
տաքոյ քաղաքին սպանանէին, զի մի պղծեսցի
քաղաքն սուրբ: Տես, զի անգիտութեամբ ըզ-
Սուրբն սրբոց արտաքս հանէին, զի մի սրբեա-
ցին 'ի պղծութեանց հոգւոյ, և ազատեսցին
'ի յաւիտենական պատժոց: Նոյն հանին զնա
արտաքս քան զայգին, և սպանին. Մարկ. ԺԲ. 8:
Ղուկ. Ի. 15:

Մերձ սորին 'ի հիւսիսակողմն տեսանին կա-
մարք 'ի վերայ պողոտային, յորոց վերայ են տունք
բազումք: Ասի՝ թէ անդ կային կանայք ոմանք,
որք իբրև տեսին՝ զի վճիռ մահուն հատեալ, 'ի
դրանէ քաղաքիս արտաքս հանէին զՅիսուս, կո-
ծէին զնա և լային. "Դարձաւ առ նոսա Յիսուս

և ասէ ցնոսա․ դստերք Երուսաղէմի՝ մի՛ լայք ՚ի վերայ իմ, այլ լացէք ՚ի վերայ անձանց և ՚ի վերայ որդւոց ձերոց ․․․ զի եթէ ընդ փայտ դալար զայս առնեն, ընդ չորն զի՞նչ լինիցի ։ Ղուկ․ ԻԳ․ 28․ 31 ։

Յաղագս Մեծարանի և Ղազարոսի տանցն,
և Ռոծամանման փեղոյն Քրիստոսի և Սիոնն,
և Թաշկինակի փեղոյն ։

Հասի իջանելով առ արևելս ՚ի ներքոյ երկրորդ կամարին՝ յաջմէ դոյ նորակերտ դուռն մի՝ որ էր փուռն հացի, յոր արկին զՎերոնիքայ կինն, զամանէ ասեն թէ՝ սա էր սեռատես կինն բժշկեալ ՚ի Քրիստոսէ․ ՚ի ձախմէ դրանն երեք աստիճանաւ ելանէ ՚ի տուն Վերոնիքայի․ ուր հանդիպեալ Տեառն մերոյ ՚ի ճանապարհին, մինչ բարձեալ տանէր ինքնին զծանրագոյն խաչն, և քրտունք հոսէին ՚ի նմանէ․ սա Վերոնիքայ կարկառեաց զվարշամակն իւր առ Յիսուս, զոր առեալ սրբեաց զքրտունս երեսաց իւրոց․ յորում տպեալ նկարեցաւ պատկերն իւր ՚ի վարշամակն, որպէս գրէ Մարինոս ։

Նաև աւանդութեամբ՝ թէ զայն տեսեալ Հրէից, արկին զՎերոնիքայ կինն ՚ի հնոցն, և հրկէզ արարին զնա ։

Հասի իջանելով մինչ ՚ի յանկիւն որմոյն յաջմէ կողմանէ, երկու կանգնաչափ ՚ի վեր յատակէն, գոյ խաչ նշան ինչ յորմն․ զորմէ ասեն՝ թէ

Տէրն մեր մինչ բարձեալ զխաչափայտն ելանէր 'ի Գողգոթայ, եհար զձեռն իւր 'ի յորմն. և ասենք թէ՝ փայտ խաչին հպեցաւ անդ, և եղև այն նշանն խոր:

Նոյն յանկիւնէն դառնալով յաջմէ՝ տեսանի կամար 'ի վերայ պողոտային, յորոյ վերայ դոյ բարձրաքերձ գեղեցկաշէն պալատն, զորմէ ասի յաւանդութեան՝ թէ անդ էր տունն Մեծատան, որ ագանէր բեհեզս և ծիրանիս. Ղուկ. ԺԶ. 19:

Նոյն դառնալով 'ի ձախմէ առ հարաւ, մերձ բաղանեաց է տուն աղքատ Ղազարոսին:

Բայց չերևի ինչ ստուգութի, քանզի Տէրն մեր առակ տայց զայս, թէ և իցէ ստոյգ եղեալ՝ գոլ իրօք Մեծատունն և Ղազարոս. սակայն ոչ ոք կարէ ճշմարտել զբնակութիւնս սոցա, թէ ուր լեալ իցէ՝ կամ անդ:

Յաջմէ ճանապարհին տեսանի բաղանիք մի, որ կոչի՝ Սուլթան համամի. և 'ի յանկեան նորին 'ի փողոցի անդ ընկողմանեալ կայ քարեայ սիւն մի՝ յերկուս մասունս բաժանեալ, որոյ երկայնութիւն իբր 13 ոտնաչափ, և է բոլորակ ամախ քար:

Նա 'ի վերայ սեանս այսմիկ հանգեաւ Յս͠ փրկիչն մեր 'ի խիստ չարչարանաց մարմնոյն՝ և 'ի ծանրութենէ փայտին կենաց, զոր բարձեալ ունէր 'ի յուս իւր:

Աստ հանդիպեալ Սիմոնի Կիւրենացւոյն, զոր կալան պահակ, զի բարձցէ զխաչ նորա. Մարկ. ԺԵ. 21: Ղուկ. ԻԳ. 26: Ո՛չ եթէ խնայէին 'ի նա, այլ զի մի մեռցի մինչև հանեալ 'ի Գողգոթայ՝ 'ի խաչ հանիցեն զնա:

Նաեւ մի մասն վերոյիշեալ սեանն՝ յամի 1836, բարձին այլազգիք, և տարեալ եդին իբր բազմոց առ դրանն պալատի բդեշխին. զորմէ ասացաւ՝ ուր էր տունն Մեծատան. յորոյ վերայ նստողքն 'ի բազմաց անտի 'ի Թանչից մեռանէին. և ոմանք 'ի նոցանէ անբուժելի ջերմութեամբ տենդիւ ախտացեալ չարաչար տանջէին ընդ երկար ժամանակ:

Սեան որոյ բարձեալ վերստին բերեալ եդին 'ի տեղւոջ իւրում, որպէս և էրն յառաջ. զայս ոչ միայն ականջալուր եղէ, այլ և ականատես իսկ. և բանիւ բազմաց լուաք՝ որք ցաւագին սրտիւ պատմեցին մեզ:

Նաեւ 'ի մնացս սեանն առ հարաւ գոյ Վէմ մի, յորոյ վերայ ասի՝ թէ պատարագէին երբեմն Լատինք, այլ այժմ անկարանան. և 'ի յահէ այլազգեաց ոչ յայտնապէս պատուի 'ի քրիստոնէից, այլ մոօք և եթ:

Նաեւ այժմ Հռովմէականք գնեցին զայս բաղանիս՝ Մուլլան համամի կոչեցեալ. որոյ 'ի հիւսիսակողմանն շինեցաւ 1859 յամին, հայակապ Հիւպատոսարան Նէմցէի. և 'ի մէջ նորա կառուցաւ յատուկ եկեղեցի, որոյ երկայնութիւն է 40 ոտնաչափ, և լայնութիւնն 25:



## Յաղագս փեղւոյ սուրբ Աստուածածնին ։

Նատի գնալով առ արևելս 'ի յետակողմ բաղանեաց գոյ տուն մի աւերակ, յոր երբեմն ծառէին անդ սպասք ։ Նա ասի և հաստ թէ կայեն Մարիամ առ միածինն իւր Յիսուս , որ բաձեալ ունէր զփայտ խաչին 'ի յուսն իւր , անդ սուրբ կայեն իբրու ուժաթափ եղեալ անկացերկիր ։ Յայսմ տեղւոջ էր յառաջագոյն եկեղեցի յանուն սուրբ Աստուածածնի . և մինչև ցայսօր երևի տեղի երից խորանացն , բայց այժմ աւերակ է՝ որպէս տեսանատես իսկ եղաք ։ Այլ ոմանք ասեն , թէ աստանօր բաղանիս շինեալ են նախ քան զեկեղեցին , և ոմանք՝ նախ զեկեղեցին ասեն ։ Իսկ սուրբ կայեն սրտէ 'ի սիրտ խօսելով ընդ Միածնին իւրոյ հեծեծանօք և արտասուօք , երթայր զհետ շաւղացն նորա . և եկանէր ընդ որդւոյն մինչ 'ի լեառն Գողգոթայ ։



## Յաղագս կապպաճոյ փեղւոյն և խամբրին՝ որ ածին զՅիսուս ։

Գնալով յարևելս 'ի վերայ ճանապարհին՝ տեսանի բարձր կամար մի , յորոյ վերայ է փոքրիկ սենեակ մի ։ Նա առեալ զջուր՝ լուաց զձեռըս իւր Պիղատոս , ասելով “ Քաւեալ եմ ես յարենէ արդարոյդ , դուք գիտասջիք . պատասխանի ետ ամենայն ժողովուրդն և ասէ , ա-

Սա սկսեալ է իմ յամի Տեառն 1826, մինչև ի 1837 ամին՝ երբեմն արգել, և երբեմն կրկին շուրջհայից. ընդ որ ՚ի խոր խոցեալ լինէր ՚ի սիրտ և ՚ի հոգի: Նոյն յամի Տեառն 1838, աւարտ-եալ զայն տեղի Լատինք, և մաքրեցին յամենայն պղծութեանց, ուր և շինեցին Վանք հոյակապ և Եկեղեցի, որ լրացաւ ՚ի 1841 ամին. որոյ երկայնութիւնն 150 ոտնաչափ, և լայնութիւն 80 չքնաղապատ պարիսպ քարուկիր, և միջքը երկայ-թի դրամբ ամրացեալ, որ է ՚ի մէջ պաղատանացն. և դուռն մտանէ ընդ հարաւ, որոյ գաւթի եր-կայնութիւնն է 50 ոտնաչափ, և լայնութիւն 29.

Ի ներքս հանդէպ դրանն գոն կրկին սենեակք և ջրհոր մի բարեհամ. առընթեր ջրհորոյն է դուռն մի առ արևմուտս, մտանէ ՚ի նեղ պողո-տայն, յաջմէ է դուռն պահարանին, և ՚ի ձախմէ է դուռն Եկեղեցւոյն, որ առ հիւսիս. ընդ որ մտանէ ՚ի յետոյս Աւագ խորանին՝ որ յարևելս. և ՚ի ներքոյ սեղանոյն գոյ բոլորակ փոս մի կճեայ քարամբք կերտեալ, որ և հնգեակ մշտավառ կանթեղօք պատուի. երկու խորան ևս գոն յաջ-մէ առ հիւսիս, և երկու՝ ՚ի ձախմէ առ հարաւ. Ի Աւագ դուռն երկրպագելի է ընդ արևմուտս՝ ընդ որ մտանէ յեկեղեցին. որոյ երկայնութիւն է 65 ոտնաչափ, և լայնութիւնն 33.

Եկեղեցւոյ արևմտեան դրան առաջի գաւ-թի երկայնութիւնն է 45 ոտնաչափ, և լայնու-թիւնն 22. առ արևմուտս գաւթին է՝ նոյն չա-փով բուրաստան: Եկեղեցւոյ հարաւակողմն գաւթի երկայնութիւնն է 53 ոտնաչափ, և լայն-

խորութիւնն 20. և արևելեան յանկեանն գոյ ջըր-
հոր մի լինքնաբուղխ, և սենեակ մի անդ, և դռա-
նակ մի՝ ընդ որ մտանէ յարևելս ՚ի նեղ պողո-
տայն. զոր ՚ի վերն յիշեցաք, որով ելանէ յար-
տաքին դաւիթն.

Աստ ծաղեցաւ Տէրն մեր ՚ի զինուորացն Պի-
ղատոսի. աստ Պիղատոս գան եհար զՅիսուս.
և զինուորացն արարեալ զպսակ ՚ի փշոց՝ եդին
՚ի գլուխ նորա, և զգեցուցին նմա զհանդերձ
ծիրանի, կամ քղամիթ կարմիր. և ետուն ՚ի ձե-
ռըս նորա զեղէգն, և բազմեցուցին ՚ի վերայ
քարերայ սեանն, և գային առ նա և ասէին, ողջ
լեր արքայ Հրէից, և հանէին նմա ապտակս. Յովհ.
ԺԹ. 1.3. Մարկ. ԺԵ. 16.19. Մատթ. ԻԷ. 27.30.

Աստ բնակին կրօնաւորք և քահանայք Լա-
տինաց, և յամենայն աւուր պատարագեն անդ
անխափան. և Ուխտաւորքն մեր համարձակ
մտանեն աստ, և ջերմեռանդն սրտիւ կատարեն
զուխտս իւրեանց.

## Յաղագս Երրորդ Բանտին Քրիստոսի.

Յելանելն ՚ի վանացն ձաղանաց և փուշ
պսակին, դէպ յարևելս յաջմէ պողոտային, յեզեր
պալատին Պիղատոսի, առընթեր կամարին գոյ
փոքրիկ դուռն մի, ընդ որ մտեալ՝ քանի մի աս-
տիճանաւ ելանէ ՚ի պալատն. անդ է գմբէթեայ
հնադոյն եկեղեցի մի, այն է Երրորդ բանտն Քը-
րիստոսի, և է հրաշագործ. քանզի պատմի՝ թէ
նեջողքն անդ լուսաւորին և դիւահար լինին,

ուտի դուռն միայ աղխեալ անդարձ և ամրացեալ, բայց 'ի բրիտանեկից ոչ ոք մտանէ անդ ։

Յաղագս Խաչաբերից Եկեղեցւոյն, որ առ Տամպաւելիս. զոր Աւրոպացիք կոչեն՝ Տէր ԸԸ. արև ։

Հանդէպ դրան այն երրորդ բանտին է այլ զառայ մի՝ որ գնայ դէպ 'ի հարաւ. անցանելով յառաջին կամարն, որոյ 'ի ձախմէ է փողոցն մի անել, այսինքն չըլխող. յետ փողոցին անտանի դուռն մի՝ իբր 30 քայլ հեռի, ուր է եկեղեցի մի գմբէթեայ հնաշէն, սա է տուն խաչաբերաց կանանց, և է 'ի ձեռս Ալլայիկեաց. և հայլս Թողուն բրիտանեկի մտանել 'ի նա ։

Յաղագս տանն Սիմոնի փարիսեցւոյն ։

Այսն պողոտայիւ ուղղակի գնացեալ մինչ 'ի հինգերորդ կամարն, յաջմէ 'ի ներքոյ վեցերորդ կամարին է կամարակապ քանդակածոյ դուռն մի հիւսեալ քարամբք, սա է դուռն տանն փարիսեցւոյն, զորմէ ասէ Աւետարանիչն ։ « Աղաչէր զնա ոմն 'ի փարիսեցւոցն, զի կերիցէ հաց ընդ նմա. և մտեալ 'ի տուն փարիսեցւոյն բազմեցաւ ։ Եւ կին մի էր 'ի քաղաքին մեղաւոր, իբրև գիտաց թէ բազմեալ է 'ի տան փարիսե-

ցուոյն, բերեալ շիշ մի իւղոյ նարդեան ազնուի, կայր յետոյ առ ոտս նորա՝ լայր և արտասուօքն սկսաւ թանալ զոտս նորա, և հերովք գլխոյ իւրոյ ջնջէր, և համբուրէր զոտս նորա և օծանէր ն. Ղուկ. Է. 38։

Թէպէտ անուն փարիսեցւոյն Սիմոն է. բայց ոչ է յայտնի. զի տուն բորոտին է 'ի գիւղն Բեթանիա. այլ սա էր մի ոմն 'ի գիտնոց և 'ի Րաբունեաց Եբրայեցւոց։

Այս կինն մեղաւոր, որ էր 'ի քաղաքին, ոմանք ասեն զՄագդաղենացւոյն՝ որ էր քոյր Ղազարու։ Դա և փարիսեցին տրտնջէին զՔրիստոսէ, ուստի ասաց Տէրն զառակս երկուց պարտապանաց։ Ղուկ. Է. 40։

Ի պատիւ տեղւոյն շինեալ էր անդ վանք, որ ունէր զերկուս եկեղեցիս հոյակապ, որք մինչև ցայսօր ժամանակի կան միայն կիսով չափ խանգարեալ, և ունի քանի մի կամարակապ սենեակս, յորս գործէ բրուտ. և կայ առաջի դրան սենեկին միում անձուկ քար մի, յորոյ վերայ տպեալ կայ շաւիղ ոտիցն Քրիստոսի։

Թէպէտ այն տեղիս է 'ի մէջ բազմախուռն բարբարոս ազգաց, սակայն ոմանք հաւատացելոց գնան անդ. քանզի այլազգիքն թոյլ տան մտանել և շրջել 'ի նմա, և այսպէս յուսացող խնդրեն 'ի նոցանէ կամաւոր պարգևս։



## Յաղագս տանն Յովակիմայ և Աննայի, և տեղւոյ ծննդեան սրբոյ կուսին Մարիամու ։

Դառնալով յետս 'ի տանէ փարիսեցւոյն մինչ 'ի վերոյիշեալ արևելեան պողոտայի կամարին, ուր է դուռն երրորդ բանտին Քրիստոսի, գնալով 'ի ներքոյ կամարին. յաջմէ կողմանէ է փողոց և դուռն Սողոմոնեան տաճարին, յորում պարտ է զգուշանալ և չգնալ ընդ այնր ։ Ընդաքոյ կամարին դարձեալ գոյ յաջմէ փողոց մի, և դուռն՝ ընդ որ գնայ 'ի Տաճարն. 'ի քառուղիին ճանապարհին՝ անցանելով ընդ այնս ուղղակի գնացեալ մինչ մերձ առ բաղանիսն, ուր 'ի ձախամէ տեսանի բարձրաբերձ կաթուղիկէիւ եկեղեցի մի, որոյ Աւագ դուռն հայի յարևմուտս, և փոքրն՝ առ հարաւ. սա է տունն Յովակիմայ և Աննայի, ուր ծնաւ սուրբ կոյսն Մարիամ։ Իսկ էր սա հռչակաւոր վանք Լատինաց, բայց այժմ է 'ի ձեռս Այլազգեաց, և է նոցա մզկիթ ։

Քանզի յամի Տեառն 1187. և Հայոց՝ ՈԼԶ. 'ի Հոկտեմբերի երկու, մինչ Իւսուֆ Սալահատին սուլթանն Եգիպտոսի՝ էառ զԵրուսաղէմ 'ի Լատինաց, յափշտակեաց և զայս 'ի ձեռաց նոցա, և արար Ֆիքհեան Վարժարան. վասն որոյ 'ի լեզու նոցա՝ կոչի Սալահիէ կամ Սալէհիէ ։

Իսկ 1857 ամի՝ Լատինք գնեցին զբոլոր վանսն, և կանգնեցին պարիսպ, և երկոքին դրամբք ամրացուցին ։

### X 177 X

### Յաղագս Բաղանեաց, որ կոչի՝ աղբիւր Աստուածածնի :

Ի Հախմէ Ճանապարհին՝ մերձ պարսպի քաղաքին գոյ փոքր բաղանիք մի, զորմէ ասի յաւանդութեան՝ թէ Աննա աւետալ զաւուրս կայան բերելով անդ լուանայր. և հետք ոտից սորա կուսին տպաւորեալ կայ 'ի կճեայ աւազան Ջրոյն, զոր ցուցանեն անդ. որում ակնածանօք իսկ և վերք. բայց զայս գրեմք 'ի գիտութիւն. և ոչ 'ի հրաւէր երթալ անդ յուխտ, և թէ հանդերձեալ գնալ ումեք՝ չէ ինչ վնաս, զի բաղանիք է հասարակաց :

Մանաւանդ յամի 1857, գնեաց զայն ազգն Յունաց, և է 'ի ձեռս նոցա այժմ :

### Յաղագս Պրոպատիկէ աւազանին :

Հանդէպ բաղանեացս է Բեթհեզդայ, այն է հինգ սրահ տունք. յորս բնակէին ախտացեալքն, հիւանդք, կաղք, կոյրք, գօսացեալք, և անդամալոյծք. որք ակնկալեալ սպասէին յաւալ իջման հրեշտակին Աստուծոյ՝ և յուզման Ջուրց Աւազանին. և 'ի տարուջն քանիցս իջանէր հրեշտակ Տեառն անդ հրամանաւն Աստուծոյ 'ի շարժել զՋուրս աւազանին, և որ ոք նախ կանխաւ իջանէր անդ, իսկ և իսկ բժշկիւր, և ոչ մնայր ինչ նշան ախտից և հիւանդութեան 'ի վերայ նորա :

Յաղագս տանն Յովակիմայ և Աննայի,
և տեղւոյ ծննդեան սրբոյ կուսին
Մարիամու ։

Դառնալով յետս 'ի տանէ փարիսեցւոյն մինչ 'ի վերոյիշեալ արեւելեան պարսպայի կամա-րին, ուր է դուռն երրորդ բանտին Քրիստոսին, գնալով 'ի ներքոյ կամարին. յաջմէ կողմանն է փողոց և դուռն Սողոմոնեան տաճարին, յորմէ պարտ է զգուշանալ և չգնալ ընդ այնր ։ Արտա-քոյ կամարին դարձեալ գոյ յաջմէ փողոց մի, և դուռն՝ ընդ որ գնայ 'ի Տաճարն . 'ի քառուղւոյն ճանապարհին՝ անցանելով ընդ այնս ուղղակի՝ գնացեալ մինչ մերձ առ րողանիան, ուր 'ի ձախ-մէ տեսանի բարձրաբերձ կաթուղիկէիւ եկե-ղեցի մի, որոյ Աւագ դուռն հայի յարեւմուտս, և փոքրն՝ առ հարաւ . ահա այն է տուն Յովա-կիմայ և Աննայի, ուր ծնաւ սուրբ Կոյսն Մարիամ ։ Այս էր սա հռչակաւոր վանք Լատինաց, բայց այժմ է 'ի ձեռս Այլազգեաց, և է նոցա մզկիթ ։

Քանզի յամի Տեառն 1187 . և Հայոց՝ ՈԼԶ . 'ի Հոկտեմբերի երկու, մինչ Իւսուֆ Սալահա-տին սուլթանն Եգիպտոսի՝ էառ զԵրուսաղէմ 'ի Լատինաց, յափշտակեաց և զայս 'ի ձեռաց նոցա, և արար ինքեան Վարժարան . վասն որոյ 'ի լեզու նոցա՝ կոչի Սալահիէ կամ Սալհիէ ։

Այս 1857 ամի՝ Լատինք գնեցին զբոլոր վանս, և կանգնեցին պարիսպ, և երկոքին դրամբք ամրացուցին ։

## Յաղագս բաղանեաց, որ կոչի՝ սուրբ Աստուածածնի։

Ի ձախմէ ճանապարհին՝ մերձ պարսպի քա-ղաքին գոյ փոքր բաղանիք մի, զորմէ ասի յա-ւանդութեան՝ թէ Աննա առեալ զդուստրն կոյսն բերեալ անդ լուանայր. և հետք ոտից սորա կու-սին տպաւորեալ կայ 'ի կճեայ աւազան ջրոյն, զոր ցուցանեն անդ. որում ակնատեսս իսկ ե-ղաք. բայց զայս գրեմք 'ի գիտութիւն և ոչ 'ի հրաւէր երթալ անդ յուխտ, և թէ հանդէ-պիցի գնալ ումեք՝ չէ ինչ վնաս, զի բաղանիք է հասարակաց։

Մանաւանդ յամի 1857, գնեաց զայն ազգն Յունաց, և է 'ի ձեռս նոցա այժմ։

## Յաղագս Պրոբատիկէ աւազանին։

Հանդէպ բաղանեացս է Բեթհեզդայ, այն է հինգ սրահ տունք. յորս բնակէին ախտա-ցեալքն, հիւանդք, կաղք, կոյրք, գօսացեալք, և անդամալոյծք. որք ակնկալեալ սպասէին յա-ռաջ իջման հրեշտակին Աստուծոյ՝ և յուզման ջուրց աւազանին. և 'ի տարւոջն քանիցս իջա-նէր հրեշտակ Տեառն անդ հրամանաւն Աստու-ծոյ 'ի շարժել զջուրս աւազանին, և որ ոք նախ կանխաւ իջանէր անդ, իսկ և իսկ բժշկիւր, և ոչ մնայր ինչ նշան ախտից և հիւանդութեան 'ի վերայ նորա։

Նոյն էր երեսուն եւ ութամեայ անդամալոյծն, եւ ոչ զոք ունելով ինքեան օգնական, կայր մնայր յանբուժելի յախտս. որպէս եւ ինքն իսկ խոստովան եղեւ բանիւ իւրով առ Բժշկապետն երկնաւոր, որ գթացեալ՝ ասաց նմա վաղվաղակի «Արի, առ զմահիճս քո եւ երթ ՚ի տուն քո»։ Յովհ. Ե. 8։

Բեթհեզդայ՝ որ ըստ Վարդապետաց ասի Տուն ողորմութեան, բայց ըստ Եբրայեցւոց Թարգմանի Հինգ սրահ, որ էր աւազան մեծ. եւ այժմ անջրդի՝ եւ եղեալ իբր աղբիւս, որ է չէօփլիւք. որոյ երկայնութիւնն է քայլ 170, եւ լայնութիւնն 63։

Նոյն յաւանդութենէ՝ թէ անդ էր փայտ խաչին, որ եղեւ մեզ փայտ կենաց. եւ ՚ի նշան ապագայ զօրութեան նորա՝ լինէր բժշկութիւն ՚ի ձեռն հրեշտակին։ Տես ՚ի Հանդէս պարծանաց, յէրես 289։

Նոյն է դուռն Տաճարին, որ կոչի Դուռն Հօտից, ընդ որ մուծանէին զողջակէզսն ՚ի Տաճարն. զոր այժմ կոչեն՝ Պապըլ Սիթի Մէրիէմ։

Իսկ առ արեւելս է դուռն Բենիամինի, զոր անուանեն՝ Աստուածածնի դուռն։



## Յաղագս Թովմայի առաքելոյ եկեղեցւոյն։

Ելեալ 'ի սուրբ Յակոբայ վանից, և գնացեալ յաջմէ 'ի ներքոյ կամարին՝ տեսանի փողոց մի, որոյ 'ի ձախմէ գոյ փոքր դուռն մի. և առ դրանն տեսանի յորմն կամար մի, որոյ մէջն է զմբեթաձև. սա է եկեղեցին սրբոյն Թովմայի առաքելոյն, և է հնաշէն։ Մարինոս ասէ՝ թէ այդ է տուն Թովմայի. բայց Յայսմաւուրքն մեր՝ յՕգոստոսի քսանևհինգ ասէ, թէ Աստ վաճառեաց Տէրն մեր զԹովմայ առաքեալն Աբբանեայ վաճառականի Հնդկացւոյ, զիարդ և իցէ, թէ այսպէս և թէ այնպէս. եկեղեցիս կառուցեալ է յանուն սրբոյն Թովմայի, որոյ երկայնութիւնն է քառասուն ոտնաչափ, և լայնութիւնն քսան. և գմբեթի երկայնութիւնն 'ի հիւսիսոյ առ հարաւ է երեսուն ոտնաչափ, և լայնութիւնն յարևելից յարևմուտս է տասն ոտնաչափ։

Սա էր յառաջագոյն վանք Ասորւոց ազգին, այժմ 'ի ձեռս Այլազգեաց է, նաև գոյ այլ ևս երկու եկեղեցի 'ի հիւսիսակողմն սորին, որք են 'ի յետուստ եկեղեցւոյն Անգղիացւոց, որ կոչի՝ Բուղաբերից. իսկ միւսն յարևելս նորին՝ որ անուանի Եաղուպիէ։ Որքա աւերակ են, և Ուխտաւորք ոչ գնան. այլ գրեմք 'ի գիտութիւն հետաքրքիր ումանց։



Յաղագս Աստուածոյ վանից, և Երկաբնեայց գերանն յաղագին ։

Գնացեալ նոյն պողոտայիւ, և 'ի դառնալն 'ի ձախմէ առ հիւսիս, յորոյ վերայ գոյ կամուրջ մի. արտաքոյ կամարին յաջմէ՝ գոյ դուռն մի երկաթեայ, ուր է վանքն Աստուծոյ, որոյ եկեղեցին կառուցեալ կայ յանուն սուրբ Ածածնի. ասի՝ թէ շինեալ է 'ի թագաւորաց Քրիստոնէից. որոյ երկայնութիւն է 40 ոտնաչափ, և լայնութիւն 22։

Յաւագ խորանի սքանչելագործ սուրբ Պատկերն, ասի աւանդութեամբ՝ թէ Յովհաննէս, որ կոչեցաւն Մարկոս, ձեռամբ իւրով նկարեալ է. և 'ի մէջ եկեղեցւոյն մերձ հարաւային որմոյն գոյ աւազան մի, զոր Ասորիք կոչեն՝ Աւազան սուրբ Աստուածածնի։ Սա է տուն Յովհաննու, որ կոչեցաւն Մարկոս, զոր յիշեցաք 'ի վերոյ։ Աստ ժողովեալ էին սուրբ Կոյսն Մարիամ, և Յակոբոս Տեառնեղբայրն, և այլք. և կային ընտրեալ յաղօթս վասն Պետրոսի առաքելոյն՝ որ էր 'ի բանտի։

Իսկ 'ի յարևմտակողմն եկեղեցւոյն է փոքր մատուռ մի՝ յանուն սրբոյն Մինասայ. որոյ երկայնութիւնն է 11 ոտնաչափ, և լայնութիւնն՝ 12. և ջրհոր մի գոյ 'ի նմա. և մեծ ջրհոր մի ևս գոյ 'ի դաւիթն։

Ի Թիւ Հայոց՝ ՌՃՀԶ. Գրիգոր վարդապետ շղթայակիրն՝ նորոգեաց զվանս, և սպիտակեցոյց զեկեղեցիս։ Իսկ և յամի Տեառն 1831, նորոգեալ սպիտակացաւ. քանզի Ասորիք հետևակ են Ազգի մերում։

Նաեւ արտաքոյ վանուց 'ի ներքոյ կամարին տեսանի քարեայ սեան մասն մի, որ է նշան նոյն երկաթեայ դրան քաղաքին, որ ինքնին բացաւ առաջի Պետրոսի. և եմուտ 'ի ներքս և եկն 'ի տուն Մարիամու մօրն Յովհաննու Մարկոսի, որպէս գրի 'ի Գործոց, ԺԲ. 2. 17:

Յաղագս Յունաց սուրբ Գէորգեայ վանուց:

Ելեալ 'ի վանուցս Ասորւոց, և գնացեալ առ հարաւակողմն՝ որ յաջմէ միոյ սրբոյ Յակոբայ վանիցն մեր՝ և 'ի ձախմէ Թաղն Հայոց, մինչ 'ի յեզր վանից մերոց. և 'ի դառնալն յարևելս՝ որ է քառադիմի ճանապարհն, որ յարևելս է անկեալ, այսինքն չըխմաղ. է դուռն մի մեծ երկթացիկ. այն է վանք սրբոյն Գէորգայ, և ունի փոքրիկ եկեղեցի մի, և քանի մի սենեակ:

Նաեւ 'ի ձախմէ սոյն վանուցս՝ կից է տուն մեծ սեպհական ստացուած վանուցս մեր Յակոբայ, որ ունի 37 սենեակ, և 13 մաղազայ՝ կամ պօպո-[illegible], և 6 [illegible], և 5 մաքուր ջրհոր, և 3 ջրհոր անմաքուր, և մի փոքր պարտէզ: Նաեւ մերձ յաջակողմն սոյն վանուցս ունիմք ևս տուն մի երեք դրամբք, յորում է իբր 18 սենեակ, 3 մաղազայ, 10 [illegible] և փիլէ, և 3 ջրհոր: Այն երկու տունք յամի Տեառն 1857 գնեցան, աշխատութեամբ Մեծավաստակ Սրբազան Պատրիարքին մերոյ, Տ. Յովհաննու Աստուածարեալ Արքեպիսկոպոսին Զմիւռնացւոյ:



## Յաղագս սուրբ Հրեշտակապետի վանացն Ձիթոյ.

Յելանելն 'ի վանուցն սուրբ Գէորգայ՝ և ելեալ առ հարաւ 'ի Թաղն Հայոց. անդ 'ի ձախմէ է դուռն՝ սուրբ Հրեշտակապետացն վանից մերոց. որ է՞ յարևելս սրբոյն Յակոբայ. և 'ի հարաւակողմն քաղաքիս, մերձ առ պարիսպն և առ դուռն Դաւթի։

Սա է յատուկ Եկեղեցի քաղաքացի Հայազգի ժողովրդոց մերոց. յորում և բնակին յաշխարհէ հրաժարեալ հաւատաւոր կանայք, որոց անի՝ Մայրապետ։ Նա էր տուն Աննայ քահանայապետին, ուր և ածաւ Փրկիչն մեր Յիսուս 'ի գիշերի չարչարանաց 'ի ձորոյն Գեթսեմանի. Յովհ. ԺԸ. 13. «Եւ ածեն զնա նախ առ Աննա՝ որ էր աներ Կայիափայի, որ քահանայապետ էր տարւոյն այնորիկ»։

Նաև յաւանդութենէ, և 'ի պատմութեանց Լատինացւոց՝ թէ յայնժամ Աննա զբաղեալ գոլով 'ի դատաստանի այլոց ուրուք, կապեցին զՅիսուս 'ի ծառն Ձիթենւոյն՝ ուր կայր. և ուժգին ձաղկեցին զնա, և ծառն կայ մնայ մինչև ցայսօր ժամանակի, և պատուի 'ի մէնջ և յայլոց ազգաց. Եւ յԱրաբացւոց կոչի վանքս այս (Տէր ըլ զէյթունէ) այսինքն վանք ձիթենւոյ. Որոյ եկեղեցին է հոյակապ և յոյժ պայծառ. և կազմեալ կայ 'ի վերայ չորից սեանց. որոյ երկայնութիւնն 40 ոտնաչափ, և լայնութիւնն 31։ Որոյ Աւագ խորանն է յանուն սուրբ Աստուածածնի, յաջմէ և յահեկէ՝ սրբոց հրեշտակա-

պետացն Գաբրիէլի և Միքայէլի ։

Կայ 'ի հիւսիսակողմն է սուրբ Մատուռն՝ որ է Առաջին բանտն Քրիստոսի․ յորոյ վերայ սեղան Պատարագամատոյց, և 'ի ներքոյ նորա քարայրակ փոսն․ յատակօք և շրջապատօքն գեղեցկակերպ կճեայ քարամբք յօրինեալ, և կրկին ճշտապատ կանթեղօք յարդարեալ պատուի․ և 'ի յետոյս որմոյն է վերոյիշեալ նոյն ծառն ձիթենւոյն։ Կայ 'ի հարաւակողմն է պահարան և խարան յանուն սրբոյն Հռիփսիմեայ կուսին, զոր նորոգեալ մեծացոյց և կանգնեաց զսեղան անդ Գրիգոր հայրապետս շղթայակիրն, 'ի թիւ Հայոց՝ ՌՃՀԴ․ և զմասն ինչ 'ի նշխարաց սուրբ կուսին աւանդեալ անդ, և զեկեղեցին զհամայնն սալայատակեցոյց․ որոյ երկայնութիւնն է 21 ոտնաչափ, և լայնութիւնն՝ 10։

Կայ գաւիթ եկեղեցւոյս է ընդարձակ, որոյ երկայնութիւնն է 24 ոտնաչափ, և լայնութիւնն 60։ Կայ յաջակողմն է խորան չարչարանաց․ և ջրհոր մի անդ 'ի գաւթի։ Կայ արտաքոյ եկեղեցւոյն, յորում արևելեան յանկեանն է քարն Ովսաննայինն․ քանզի յաւուր գալստեանն Քրիստոսի յԵրուսաղէմ քաղաք, մինչ ասաց առ Փարիսեցիս և առ դպիրս եթէ դոքա լռեսցեն, քարինքդ աղաղակեսցեն․ Ղուկ․ ԺԹ․ 40։ Նոյն յաւանդութենէ՝ թէ սա է 'ի քարանց յայնցանէ։ Եւ ունի յատուկ դուռն մի երկաթի՝ որ ելանէ 'ի փողոցն առ արևմուտս, որ անջատէ զերկուս վանս յիրերաց․ զսուրբ Յակոբայ և զսուրբ Հրեշտակապետի․ և հանդէպ դրանս է մեծա-

դոյն փայտակերտ դուռն, ընդ որ մտանէ 'ի մեծ վանս. և առ հարաւ գնալով նոյն պողոտային այլ յատուկ մեծագոյն դրամբք եղանէ 'ի հրապարակն. ուր յամենայն աւուր Ուրբաթու՝ անասնոց պաշարեղինաց և չորքոտանեաց վաճառ լինի, որ 'ի յետուստ դրանն Դաւթի. և 'ի ներքոյ պարսպին են տունք ուրկաց՝ և յարևելակողմն հրապարակին է պանդոկ ազգիս Հայոց, կամ մեծ ախոռ, զոր նորոգեցաք 'ի հիմանէ յամի Տեառն 1837:

Յաղագս Յունաց սուրբ Աստուածածնի վանուց. և Խպտայոց պանդոկին:

Ելեալ 'ի սահմանէն սրբոյ Յարութեան, և մտեալ 'ի վաճառանոցն 'ի ձախակողմն, տեսանեմք 'ի գլուխ վաճառանոցին յաջմէ փողոց մի զառ 'ի վեր. և 'ի գագաթ նոյն փողոցին 'ի ձախմէ է նորաշէն պանդոկն Խպտուց, որ շինեցաւ յամի Տեառն 1839: Իսկ յաջմէ նոյն փողոցին, հանդէպ պանդոկին է վանքն Յունաց. որ ունի փոքրիկ եկեղեցի մի յանուն սուրբ Աստուածածնի, և բազում սենեակս, յորում բնակին մայրապետք նոցա:



## Յաղագս սուրբ Գէորգայ վանուցն Խոփայոյ։

Այս հռովմէադաւան Յունաց վանացն է տաճարն սրբոյն Գէորգայ, որոյ եկեղեցին կառուցեալ է ՚ի վերայ քարից քառանկիւնի սեանց, բայց առատաղն յոյժ ցած, և ունի զերիս խորանս, և զմասն ինչ ՚ի նշխարաց սրբոյն Գէորգայ զօրավարին։ Ըստ նախնի սովորութեան ամ յամէ ՚ի տօնի սրբոյն Գէորգայ. այն է ՚ի Վարագայ խաչի պահոց Ուրբաթի երեկոյին բազմութեամբ և հանդիսիւ գնամք կատարել ըզպաշտօն ժամերգութեան, և առնել նախատօնակն, և վերադառնամք։ Իսկ ՚ի շաբաթ աւուր ընդ առաւօտն զկնի ժամերգութեան, գնացեալ անդ կատարեմք զփրկագործ խորհուրդ սուրբ Պատարագին, և վերադառնամք ՚ի սուրբ Յակոբ։

---

## Յաղագս վանաց Յունադաւան Հռոմէականաց։

Յամի Տեառն 1847 ՚ի յարևմտակողմն սուրբ Գէորգայ Խոփայոյ վանուց յունադաւան Հռոմէականք շինեցին նորոգ ՚ի հիմանց վանս, որոյ եկեղեցին է յանուն սուրբ Աստուածածնի. որոյ երկայնութիւնն է 63 ոտնաչափ, և լայնութիւնն 50. որ ունի երիս հոյակապ խորանս ընդարձակ և պայծառ, և ՚ի գմբէթն գոն սենեակք. և յատուկ թաղ մի իբր քսան սենեկօք, ուր բընակին միաբանք նոցին։

## Յաղագս Լատինաց դաստիարակարանին ։

Ի հարաւակողմն վերոյիշեալ վանուցն է նորաշէն պատրիարքարան Լատինաց՝ որ շինեցաւ յամի 1850 . 'ի մտանելն 'ի ներքս 'ի ձախմէ փոքըր պարտիզին՝ է փոքրիկ եկեղեցի մի . յորոյ վերայ քանի մի հոյակապ սենեակք են . և յատուկ ճեմարան մի , և այլն ։

Իսկ յարևելակողմն սոյն Պատրիարքարանիս բաւական մեծութբ էր տուն մի Յունադաւանն Հռոմէականի միոյ , որ ունի քանի սենեակս , և ջրհորս , և 'ի ներքոյ մաղազայ վաճառականաց , զոր յայսմ ամի 1859 . արդեամբք սրբոյ Աթոռոյս գնեաց Ամենապատիւ սրբազան Պատրիարքն Հայրըն մեր Հոգևոր ։

## Յաղագս Մեծ վանուց Լատինաց ։

Յարևմտակողմն քաղաքիս է վանքն Լատինացւոց . եկեղեցին է կաթուղիկէիւ յանուն սուրբ Աստուածածնի , որոյ երկայնութիւնն է 80 ոտնաչափ , և լայնութիւնն 39 . և ունի մետաղեան խորանս , զերրին յարևելս հանդերձ ուռագ խորանաւն , չորքն առաջի չորից սեանցն . և չորքն առ հարաւ և առ հիւսիս . և է կամարակապ 'ի վերայ քառից քառակուսի սեանց . բայց ցած յոյժ . և ունի բազում սենեակս , և յատուկ կամարակապ թաղ մի քառակուսի , յորում են սենեակք աւելի քան զյիսուն վասն կարգաւորաց . և ունի բժշկարան և հիւանդա-

նոց, և պղպեղս, և արտաքոյ վանուցն յատուկ հիւրանոց՝ իբր սենեակս 45։

## Յաղագս վանուց Ռուսաց։

Ի հիւսիսակողմն Լատինաց վանուցն է վանքըն Ռուսաց, որ ունի հին եկեղեցի մի յանուն սուրբ Միքայէլի հրեշտակապետին. և ունի աւելի քան զվաթսուն սենեակս, և յանդիման վանուցն է նորակերտ եպիսկոպոսարան, համայնարան, և գանձելէր։

## Յաղագս Ձեթի վանուցն Յունաց։

Եկեղեցին է յանուն Կոստանդիանոսի և Հեղինեայ՝ բայց փոքրիկ. և է կից Վերնատան մերոյ՝ որ ՚ի սուրբ Յարութեանն. որոյ կիցն բազմամուտքն հայրին ՚ի ներքս ՚ի Վերնատունն մեր. յառաջ փոքրիկ էր վանքս բաց զբեկյս Հաննա վարդապետին, բայց զկնի Հապէշից՝ որ կայէր սուրբ Թեկղի. խառնեալ ընդ միմեանս, արարեալ են զերկոսեանն մի, և ընդարձակաթեամբ իւրացուցեալ են. ուր նստի Պատրիարք նոցին և գործակալք. և այլն։



## ՅԻՇԱՏԱԿՈՒԹԻՒՆՔ

Ոմանց Սրբազան Պատրիարքաց՝ և Թագաւորաց մերոց, և Երևելի անձանց և իրաց։

Յամի Տեառն 391. կրտսեր եղբայր Բարսեղի Կեսարացւոյ՝ Գրիգոր Նիւսացի գնաց յԵրուսաղէմ, և շրջեցաւ 'ի Տնօրինական տեղիս նովին հոգւով որով արժան է տեսանել զայնպիսի սուրբ Ուխտատեղիս, մինչև ասել նմա, թէ 'ի սիրտ աստուածասէր ուխտաւորին մնան միշտ Բեթղեհէմ, Լերան Ձիթենեաց, Գողգոթայ, և սուրբ Յարութիւն. Ի Վարս սրբոց։

Յամի Տեառն 1169, և Հայոց՝ ՈԺԸ. մայրն Հեթմոյ և Ներսէսի Լամբրոնացւոյ Շահանդուխտ տիկին գայ յԵրուսաղէմ յուխտ, և դառնայ յերկիր իւր։

Յամի Տեառն 1266. Ֆնտուխտար բռնաւորն Եգիպտոսի կալեալ զերրորդ Լևոն արքայորդին Հեթմոյ առաջնոյ՝ կապանօք տանի յԵգիպտոս ընդ բազում գերիս. նա մինչ 'ի կապանս էր, խնդրեաց 'ի նմանէ գալ յԵրուսաղէմ յուխտ, որում հրաման ետ Ֆնտուխտարն, շղթայիւք և կապանօք եկն յԵրուսաղէմ յերկրպագութիւն սուրբ Տեղեաց, և վերադարձաւ յԵգիպտոս։

Սա յամի Տեառն 1269. արձակեալ 'ի կապանաց՝ գնաց առ հայրն իւր արքայն Հեթում, և յետ վախճանի Հեթմոյ՝ թագաւորէ փոխանակ նորա։

Յամի Տեառն 1271, և Հայոց՝ ՉԺԸ. Այն այր երրորդ Լեւոն արքայն շինէ յԵրուսաղէմ զպարիսպն սրբոց Հրեշտակապետաց վանուցն։ Տես ՚ի Հաննա պատմութեան, յերես 220. բայց զԹիւն սըխալ դնէ ՊԼԸ. յերես 110։

Նա ՚ի հիւսիսային կողմն սուրբ Յակոբայ եկեղեցւոյն՝ հիմնարկեալ շինէ Եկեղեցի մի յանուն սրբոյն Թէոդորոսի. որոյ երկայնութիւնն է 55 ոտնաչափ, և լայնութիւնն 25։ Նաև գաւիթն յանուն սրբոյն Թէոդորոսի, որոյ ՚ի ձախակողմն է մատուռ մի յանուն սրբոյն Մերկերիոսի, որ նահատակեցաւ յամի Տեառն 250։ Յաջակողմանն է պահարան մի, ուր և խորան յանուն սրբոյ Կարապետի. և խորան մի ևս արտաքոյ մեծի դրանն հարաւային, յանուն Թադէոսի առաքելոյն և Սանդխտոյ կուսին։

Գրէ Հաննա վարդապետ ՚ի պատմութեան, յերես 110. Թէ «Թորոս որդի Լեւոնի արքայի մեռաւ աստ. ՚ի յիշատակ Որդւոյ իւրոյ շինեաց զեկեղեցիս, որոյ գերեզմանն կայ ՚ի հիւսիսային յանկեան եկեղեցւոյն»։ զայս չկարացաք ստուգել, Թէ ուստի առեալ գրէ զայն։

Ի տարւոջն երիցս հանդիսաւոր Տօնախմբութիւն կատարի յեկեղեցիս այս։ Նախ՝ ՚ի մեծի պահոց՝ յառաջին շաբաթու շաբաթ օրն, ՚ի Տօնի սրբոյն Թէոդորոսի զօրավարին։ Երկրորդ՝ ՚ի Տօնի սրբոցն Թադէոսի առաքելոյն և Սանդխտոյ կուսին. և Երրորդ՝ ՚ի Տօնի սրբոյն Մերկերիոսի զինաւորին։

դուստրն Փեննա խնդրեցին մնալ յԵրուսաղէմ. Եւ այսպէս Լևոն եկեալ յամի Տեառն 1388 գնաց ՚ի Հռոմ, ՚ի Սպանիա, յԱնգղիա, և ՚ի Գաղղիա, առ ՚ի գտանել զօգնութիւն, բայց ՚ի դերև ել. այլ հիւանդացեալ մեռաւ ՚ի Փարիզ 60 ամաց, յետ մետասաներորդ ամի ազատութեան իւրոյ. յամի Տեառն 1393. ՚ի Նոյեմբեր ամսեանն. և թաղեցաւ յեկեղեցւոջ վանացն Սեղեստինեանց ՚ի հոյակապ գերեզմանի. ուր և փորագրեալ կայ անուն նորա ՚ի վերայ շիրմի մինչև ցայսօր։ Իսկ թագուհին Մարիամ դշխոյ և դուստրն Փեննա կացին մնացին մինչև ՚ի վախճան կենաց իւրեանց. յամի Տեառն 1408. և թաղեցան մերձ տաճարի սրբոյն Յակոբայ։ Ի պատմութիւն Հայոց, Գ. հատոր, յերես 383, 384։

Յամի Տեառն 1631, և Հայոց՝ ՌՁ. Գրիգոր պարոնտէր կոչեցեալ Նաւոր Պատրիարքն Երուսաղէմ. և յամի 1684, և Հայոց՝ ՌՁԳ. ձեռն ՚ի գործ արկեալ՝ շինեաց զվանս մեր սուրբ Ծննդեան՝ որ ՚ի Բեթղեհէմ, և նորոգեաց զսուրբ Փրկիչ վանքն մեր. և կամարակապ կառոյց զեկեղեցի սրբոյն Յովհաննու աւետարանչին. որ է կից սուրբ Յարութեան տաճարին. և էառ զերիս կամարս ՚ի Լատինացւոց վասն Հայոց ՚ի Վերնատանէ սրբոյ Յարութեան, զորմէ գրեցաք այլուր։ Տես ՚ի պատմութիւն Հայոց. Գ. հատոր, յերես 616։

Յամի Տեառն 1640, և Հայոց՝ ՌՂ. շինեաց զցորենաթաղն ՚ի կողմն արևելից սրբոյն Յակոբայ՝ ՚ի վերայ աւերոյն եղեալ սենեկօքն։ Եւ

գոյ 'ի Բերիա, և ձեռնադրի կաթուղիկոս 'ի վե-րայ ամենայն Հայոց՝ որ ընդ իշխանութեամբ Օսմանեանց, 'ի խաչատուր կաթուղիկոսէ Կիլի-կիոյ. զոր հրաւիրեալ էր 'ի Բերիա, ընդ որ և յառաջագոյն խորհրդակցութեամբ միաբանեալ էին 'ի սիրտ և 'ի հոգի. և երթեալ նստի Եղի-ազար յԵրուսաղէմ. և Աստուածատուր Պատ-րիարքն սորայ Երուսաղէմի վարէ զնա անտի, և ելեալ գեգերի յայլ և այլ քաղաքս:

Իսկ Յակոբ կաթուղիկոսն սորայ Էջմիածնի 1665 գայ յԵրուսաղէմ յուխտ, և երթայ 'ի Կոստանդնուպօլիս. և անտի յԷջմիածին: Իսկ Եղիազար կաթուղիկոս յատուկ արքունի հրա-մանաւ կարգի և Պատրիարք սորայ Երու-սաղէմի յամի Տեառն 1666:

Իսկ յամի 1667, յաւուր տօնի Ծննդեան Յի-սուսի փրկչին մերոյ մեծաւ հանդիսիւ կատա-րէ զխորհուրդ օրհնութեան սրբալոյս Միւռո-նին, որպէս գրէ 'ի կոնդակին՝ որ առ ամենայն իշխանս. նա և յիշէ զառատութիւն իւղոյ ծա-ռոյ ձիթենւոյն, յոր կապեցաւ Տէրն մեր. որ կայ մինչև ցայսօր 'ի սուրբ Հրեշտակապետի վանս մեր. և ըստ խնդրանաց Լատինացւոց՝ 'ի Սրբալոյս իւղոյ անտի առաքէ ընծայ Պապին Հռովմայ, որպէս գրէ 'ի ծանուցական գիրս իւր, որոյ ամբողջ օրինակն եդաւ 'ի Ստորագրու-թեան յայսմիկ:

Իսկ իբրև ամս երեք վերստին Եղիազար կա-թուղիկոս դեգերի աստ և անդ 'ի ձեռն Աստ-ուածատուր Պատրիարքին սորայ Երուսաղէմի,

որ և 1668 վախճանեցաւ . և յամի 1670 հաստատի Եղիազար Պատրիարքն Երուսաղէմի՝ և միանգամայն կաթուղիկոս սրբոյ Էջմիածնի . և յամի 1679 վերստին երթայ Յակոբ կաթուղիկոսն 'ի Կոստանդնուպօլիս :

Իսկ 1680 'ի փոխս սրբոյն Յակոբայ Եղիազար կաթողիկոս ձեռնադրէ քանի մի Եպիսկոպոսունս . և 'ի նոյն ամի Յակոբ կաթուղիկոսն Էջմիածնի վախճանի 'ի Կոստանդնուպօլիս : Իսկ միաբանք սրբոյ Էջմիածնի յայնժամ ընդ երկար խորհեցան՝ և զգդումն Ազգիս առաջի աչաց ունելով յամի 1682, գիր հրաւիրանաց առաքեցին 'ի սուրբ Երուսաղէմ՝ առ Եղիազար Արքայազն կաթուղիկոսն՝ գալ յԷջմիածին՝ և նստել 'ի սեպհական Աթոռ իւր . որ և նա յայսմ ամի գնաց 'ի Կոստանդնուպօլիս . և զԿարապետ Պատրիարքն թագաւորեալ քաղաքին ձեռնադրեաց Եպիսկոպոս . և անտի ընդ խնդրանաց նոցին գնաց յԷջմիածին 'ի վարել զհոգևոր իշխանութիւն իւր : Իսկ զօրինակ Հրաւիրանաց գրոյն միաբանից սրբոյ Էջմիածնի եդեալ եմք յաղագս տեղւոյ, զոր տես անդ : Իսկ այս ամենայն ընդարձակ տեսանէք . Ի պատմութիւն Հայոց , Գ. հատոր, Գլուխ ԼԶ . յերես 697 :

Յամի Տեառն 1713, և Հայոց՝ ՌՃԿԲ . Կարճ Յօհաննէս Պատրիարքն Պօլսոյ գայ յԵրուսաղէմ վասն այցելութեան , ուր մնայ ամ մի և ամիսս ութն . և դառնայ 'ի Պօլիս :

Յամի Տեառն 1715, և Հայոց՝ ՌՃԿԴ . Գրիգոր Շղթայակիրն ընտրեցաւ Պատրիարք՝ սրբոյ

Երուսաղէմի ։ Այլ ՚ի Թիւ Հայոց՝ ՌՃԿԷ ․ յա-ւուր Վերափոխման սրբոյ Կուսին՝ երթայ ՚ի Կոս-տանդնուպօլիս ․ և յայնմ ամի հրաման եղև յԱր-քունուստ իւրաքանչիւր ազգաց չիշխել զ[illegible] իւր ՚ի սուրբ Յարութիւն ։

Այլ ՚ի Թիւ Հայոց՝ ՌՃԿԹ ․ ՚ի 13 Սեպտեմբեր ամսոյն յաւուր Ուրբաթու ․ Գրիգոր Շղթայա-կիր Արքունի հրովարտակաւ հաստատեցաւ Պատրիարք սրբոյ Երուսաղէմի ․ և ՚ի 14 Սեպ-տեմբերի՝ յաւուր շաբաթու յիշատակեցին ՚ի Պատրիարգին ՚ի Կոստանդնուպօլիս՝ զանուն քաղ-ցրախօս Առն այնորիկ ․ որոյ ձեռնտու իշխա-նութեանն էին կեսարացի մահտեսի Մելիքսան այր երևելի ՚ի դուռն արքունի ։ Ապուչեխցի մահ-տեսի Մուրատեան մահտեսի Յարութիւն ․ Թէ-միրճեան մահտեսի Յարութի ․ կեսարացի մահ-տեսի Սարգիս ․ և Կոստանդնուպօլսեցի մահտե-սի Խաչայէլ և մահտեսի Լութֆլին ․ և այլք բա-զումք ․ որք էին պատճառ բարութեանց յա-մենայն իրս սրբոյ Աթոռոյս Երուսաղէմի ․ վասն որոյ ծանուցան աստէն անուանք բարեյիշատակ հանգուցեալ անձանցն այնոցիկ ։ Ապա եկեալ այն Շղթայակիր Հայրապետն մեր ՚ի Պօլսոյ եկն ՚ի Բերիա, որ է Հալէպ ․ անդ բազում կալուածս գնեաց, և նորոգեաց զհոգեւորսն սրբոյ Երու-սաղէմի, որ կայր անդ ՚ի նախնեաց անտի ։ Այ-[illegible] եկն յԵրուսաղէմ ․ ՚ի Թիւ Հայոց՝ ՌՃՀ ․ ՚ի 12 Փետրվարի ։ Տես ՚ի պատմութիւն Հաննա վարդա-պետի, յերես 147 ։

Սա շինեաց ՚ի կողմն արևելից սրբոյն Յակո-

բազմեալ եպիսկոպոսն Եւդոկիացի, և Պետրոս եպիսկոպոս Երուսաղէմացի. համդերձ պատուաւորօք եկեալ գային 'ի գիշերի չուեցին 'ի Քերբոն՝ առաջնորդութեամբ Արտաւահման չէյխին Քերբոնի, որպէս զի գնասցեալ անտի Յեգիպտոս դիմեսցեն 'ի Կոստանդնուպօլիս, ուր կարասցեն գտանել զհնարս ազատութեան պարտուց, և այլն։

Եւ իբրև լուան մեծամեծք քաղաքին զփախուստ կառավարչացն, առաքեցին հրաւիրակս զկնի նոցա 'ի Քերբոն, բազում երդմամբ յայնմհետէ չնեղել զնոսա. իսկ վերոյիշեալ չէյխն Քերբոնի՝ երաշխաւոր լեալ եպիսկոպոսացն, յետ երից աւուրց դարձ արարին վերստին յԵրուսաղէմ։ Եւ այս յետ քանի ինչ աւուրց դարձեալ ապստամբեցան գլխաւորք քաղաքին, և տիրեցին բռնութեամբ ամրոցի քաղաքին. և կալեալ զեպիսկոպոսունս եդին 'ի բանտի, և զկնի երկուց աւուրց արձակեցին զնոսա, և չորք եպիսկոպոսք ելեալ անտի գնացին 'ի Բեթլեհէմ, ուր կացեալ ամիսս չորս, և ապա վերադարձան յԱթոռն։

Եւ յամի 1826, 'ի տասն Յունիսի ամսոյն մեք եկաք յԵրուսաղէմ յուխտ, և յետ կատարելոյ զուխտս մեր, առաքեցին զմեզ 'ի Բեթլեհէմ իբրև միաբան, ուր մնացաք մինչ 'ի ութը Զատկի։ Յայսմ ամի 'ի միջոցի ծննդեան և Առաջաւորաց բարեկենդանի, ապստամբեցան Բեթլեհէմցիք. յեղակարծ իսկ գրոհ տուեալ յափշտակեցին զերիս վանս. զՄերն, Լատինաց, և Յունաց. յորոց բռնի խնդրէին քառասուն հինգ քսակս։

միաբանութիւն սրբոյ Աթոռոյս հանապազ
խորհէր զհնարս ազատութեանն 'ի պարտուց
անտի. վասն որոյ անձարացեալ՝ խնդրեաց զօգ-
նութիւն 'ի լութենէ ազգիս, և գրեաց 'ի
Կոստանդնուպօլիս առ Ազգասէր Ամիրայս,
ուստի խորհրդով Գերամեծար Ազգասիրաց
յատուկ անօրէնութիւն ինչ եղև. և յանձնեալ
Ամենապատիւ Տ. Կարապետ Արքալան Պատ-
րիարքն Կոստանդնուպօլսոյ՝ Բոխիլը գրեաց 'ի
բարձրագոյն Դուռն արքունի, զի Բոխոխի- վերջ-
ուեսցի հաստատութն այն ծանր պարտուց սրբոյ
Աթոռոյս. որ և 'ի Դրանէն արքունի տուաւ
հրովարտակ մի քննութեան՝ այսինքն խափլուն,
զի եկեալ մի առցի 'ի դատարանէ քաղաքիս Երու-
սաղէմի, և Բոխոխի- վճարեսցի պարտքն այն:

Այս յաւուրսն յայնոսիկ գործով եմիրհոր-
ձութեան էր 'ի Պոլիս Զմիւռնացի խոհական
Յոհաննէս վարդապետն, որ այժմ է Պատրիարք
սրբոյ Աթոռոյս. զնա արժան դատեցան, զի տ-
ռեալ զարքունի հրովարտակն խափլուն՝ ուղևոր-
եսցէ 'ի սուրբ Երուսաղէմ տանել զնա 'ի
դատարանէ: Սակայն ինքն բնական հանճարով
քերով նախ գնաց յեգիպտոս 'ի Պոլսոյ, և միջ-
նորդութեամբ Հայազգի ծիվանի Պէյին, որ
բժշկապետն էր փոխարքային Եգիպտոսի, 'ի
դիւրութիւն և 'ի յաջողութիւն գործոյն քննե-
լաւ և գգիր ինչ 'ի փոխարքայէն առ Լէգիաց-
կատէ Մոլլային Երուսաղէմի, զի և հրովարտակն
խափլուն և ս յանուն նորին գրեալ էր 'ի Պոլսոյ:
և ապա եկն 'ի սուրբ Երուսաղէմ նոյն խոհեմ-

ընթացս Յօհաննէս վարդապետն. և առեալ ընդ
իւր զեւդոկիացի կարապետ եպիսկոպոսն՝ էջ ՚ի
դատարանն. և մատոյց զյանձնարարական գիրն
մեր վերոյիշեալ ժողովոյն՝ և ետ ընթեռնուլ ըստ
հրովարտակին արքունեաց ՚ի ներկայութեան միաձու-
նից. որք միաբան հաւանութեամբ և իրաւամբք
խնդրեցան, թէ այսչափ գումար պարտուց ան-
հնար է վճարել առանց խափանի, մանաւանդ ոչ
և միւս պարտատերաց, քանզի շահ ՚ի վերայ
շահուց բարդեալ՝ այնպէս մուրհակ առեալ են.
Իսկ առանձինն ամենայն աւագանիք համո-
զեցին զդատաւորն՝ թէ այսպիսի խնդիր ինչ
հազիւ հազ կարէ անկանիլ ՚ի ձեռս մեր, ու-
րեմն պարտ է պահանջել ՚ի Հայոց վաթսուն հա-
զար ղուրուշ՝ իւրեանց բաժն ասելով. որ և յայն-
ժամ իւր միջնորդ լինելով ՚ի մէջ մեր և դատա-
ւորին, ինքեանք ևս շահեցին կաշառօք. որ և
դատաւորն անսալով շահասիրութեան նոցին՝
երկարեցոյց յոյժ միջոց կատարման գործոյս այ-
նորիկ. և ծանուցին նա և առ բդեշխն Դամաս-
կոսի զայս ամենայն, որովհետև ընդ իշխանու-
թեամբ նորին էր քաղաքս այս. թէպէտ հրո-
վարտակն արքունի առ ժողովոյն գրեալ էր.
Այս բդեշխն յայնմ ամի էր Զմիւռնացի Մու-
լէհ փաշայն այր խիստ և անաչառ, երկատասան
անձամբ Փոլոզչէր մի առաքեաց առ Փոլոզլին՝
ասելով, թէ ՚ի մօտոյ ունիմ գալ յԵրուսաղէմ,
և կամիմ տեղեկանալ այդ ամենայն եղելութեանց,
և Փոլոզչէրն մնացէ այդր. որ և նա եկեալ կա-
մէր մնալ ՚ի սուրբ Վանս մեր, բայց ՚ի ձեռն

ցամս ութն . և առաջի Ստամբօլ Էֆէնտիին առած և հինգ հազար ղուռուշ տուեալ վասն խըզմէթի փոխանակ վաթսուն հազար ղուռուշին , այսպէս վերջացոյց զայս պաշտօն իւր ։

Նոյն յամի Տեառն 1827 , և՚ի չորս Դեկտեմ-բեր ամսոյ եկն ժամանեաց յՃէմ՝ այցելու Նորա զոր արքեպիսկոպոս Անդրիանուպօլսեցին յանուն կրնկալ պահու , որ և առաքեալ էր համակամն ընտրութբ քրիստոսասէր Ազգասէրս ժողովոյն այսր , արքունական բարձրագոյն հրամանագ-րովն այնուհետև առ ՚ի վճարել զբազմակուտակ պարտսն նշանակեալ Բուշուփին , որոյ ՚ի գալն առեալ ինն հանդարտեցան պարտատեարք , որք նախ քան զգալն նորին՝ յոյժ նեղէին զԱթո-ռայինս , և սպասաւորսն ։

Որդ՝ ազատեցաւ սբ Աթոռս ՚ի պարտուց իւրոց ՚ի միջոցի վեց ամաց , և յամի 1834 . առատապարգև արամբք օրհնեալ ազգիս Հայոց՝ և ջերմեռանդն տէրունական Ուխտաւորաց . որոց ամենեցուն յանսպառ գանձուց շնորհաց Ողորմութեան իւ-րոյ հատուսցէ առատ և ՚ի հանդերձելումն , և ազատս կացուսցէ զորութիւն Ազգիս ՚ի հոգե-ւոր և ՚ի մարմնաւոր պարտուց . և զքաղաքագամն և զխառնակաւորս և օ սրբոյ Աթոռոյս երանա-կան առատութեան վերնոյն Երուսաղէմի արժա-նի արասցէ . ամէն ։

Այլ մինչև էր հատուցեալ երանելոյն վերջ-րորդ Բուշուփին պարտուց , հոգեսէր Ջանիքը ջերմեռանդն անձանց երևելեաց Ազգիս նորո-գեցան հնագոյն հրովարտակքն պատուարագի կենն ;

տու Գերեզմանին Քրիստոսի ։ Յամի Տեառն 1829, յամսեանն Օգոստոսի՝ տան հրամանատարն Վեհ. ձեռն Վանեցի Խաչիկ անուանեալ կարապե-տին բազմամեայ սպասաւորին վերայիշեալ Սրբ-ազան Պօղոս արքեպիսկոպոսին, որ այս կարա-պետ ՚ի Ճանապարհին ՚ի միջոցի դիւղաքաղաքին Հայկամ Համուզ հարեալ ՚ի խորշակէ մեռանի, և զհրամանատարն Այլազգի սուրհանդակք հա-սուցանեն ՚ի սուրբ Աթոռս ։

Ար և սոյն Պօղոս Սրբազանն համակամութբ խոր-հրդականաց՝ բազում ջանիւ և ծախիւք ՚ի գործ եդ զհրամանն ողորմած և բարեխնամ Արքային, զի ՚ի յերկրորդում աւուր Սեպտեմբեր ամսոյ, սկիզբն եղև պատարագելոյ հանդիսիւ մեծաւ ՚ի վերայ սրբոյ շնորհատու Գերեզմանին. բայց այսու պայմանաւ. նախ Յոյնք՝ զկնի Մեք, և ա-պա Լատինք. այլ ՚ի յատկացեալ հանդիսի աւուր՝ հանդիսատէրն յետ քան զամենայն ունի պատա-րագել մեծաւ հանդիսիւ. որպէս գրեցաք ՚ի տեղւոջ իւրում ։

Յամի Տեառն 1831, յաւուր Ուրբաթու բուն բարեկենդանին, յորում աւուր ըստ Նախնի սո-վորութեանն ընդ առաւօտն մինչ գնոյցին միա-բանք և ամենայն աշխարհականն Ուխտաւորք ՚ի տուն սբյն Մարկոսի յեկեղեցին Ասորւոց՝ յուխտ և ՚ի մատուցանել զՊատարագ. մինչ սկսաւ պա-տարագիչն զգեստաւորիլ, որ էր կարապետ վար-դապետ Էվէրէկցի ձեռնասունն Եղիա եպիս-կոպոսին, ՚ի խուռն բազմութենէն յեղակարծ խիստ վերնատունն անկեալ կործանեցաւ, յորոյ

միւռոյ լի էին կանթեղք․ նոյնպէս և ՚ի մէջ բերդին նու-
րաց լի կանթեղք և պատմէրք, բայց չերևէր ինչ նշ-
նման ունէր․ յորում ամի նորոգեցաւ այս եկեղե-
ցեցին Աստուծոյ և այլիմաստիցաց։

Յամի Տեառն 1832․ ՚ի սասանեն Մայրո ան-
նոյ ՚ի չորրորդ կիւրակէի մեծի պահոց, յորժամ
գիշերի ՚ի մէջ սրբոյ Յարութեան զինի Յունաց
պատարագին․ գրոհ տուեալ Յունաց այլազգ
ոսկարեանց խորտակեալ կոտորեալ մանրեցին
զնորա եղեալ բոլորակ պատկերազարդ կանթեղ
պատուական քարն Ուժաթափիման սրբոյ Աստ-
ուածածնի անուն․ յորում եղեալ էր յառաջ
քան զամիսս ինչ․ որ առաքեցաւ ՚ի Պոլսոյ ՚ի յի-
շատակ երեսուն և վեց ամանոց՝ անկրուանկան
Ռուսաստանոցաց, որք ծովայոյղ եղեալ էին քանի
ամաւ յառաջ ՚ի նաւէն յԵրուսաղէմ։

Յամի Տեառն 1834․ յաւուր մեծի շաբաթու
Ճրագալուցի, յորում աւուր երկու ազգք Մեք
և Յոյնք առնեմք արարողութիւն լուսաւոր-
եայի ըստ նախնի հարց մերոց ՚ի սուրբ Գերեզ-
մանն Քրիստոսի․ և ՚ի նմին ժամու մեծազօր
դուքսն Եգիպտոսի Իպրահիմ փաշայն, որ տիրէր
Երուսաղէմի, առեալ ընդ ինքեան զզօրս իւր
աւելի քան զհինգ հարիւր, գայ մտանէ ՚ի սուրբ
Յարութեան տաճար՝ յեօթներորդ ժամու՝ ՚ի
պահպանութիւն խուռն բազմութեան Ուխտա-
ւորաց Մեր և Յունաց՝ որք էին աւելի քան ըզ-
տասն հազար անձինս, թող և զայլազան ազգս
երկրաց և բնակաց․ և ինքն Իպրահիմ փաշայ ե-
լեալ նստէր ՚ի վերնատունն Լատինաց, և զօրքն

օրն կատարեալ, զպատանիս, զերիտասարդս, և զգեղեցիկն գերի վարեալ, և տարեալ յեգիպտոս. զորմէ զանց առնեմք վասն երկարութեան բանից, և թողումք ընդարձակ պատմութեան այլոց:

Իսկ յետ այսր ամենայնի, յամի 1834, յամսեանն Օգոստոսի Գաբրիէլ Սրբազան Պատրիարք, որ ՚ի բազում ամս էր ՚ի Մայրաքաղաքն ՚ի Զմիւռնիա. ըստ հաճութե Ազգային ժողովոյն վերադարձաւ ուրախութեամբ յԱթոռն սուրբ, ուր եկաց մնաց յանդորրութեան մինչ ՚ի վախճան կենաց իւրոց: Յաւուրս սորա, և յիշեալ մեծափառաւոր Տեառն Պօղոսի այցելութին Աթոռոյս՝ բազում կարևոր շինութիւնք եղեն աստ ՚ի ներքս և յարտաքս:

Յամի Տեառն 1836 շինեցաւ նորոգ Վերնատուն յեկեղեցւոջ սուրբ Յակոբայ, ուր և կառուցան կրկին խորանք առաջի սեանց, Պայծառակերպութեան, և Ընթրեաց. և բարձաւ խորանն սրբոյն Սիոնի, որ հաստատեալ կայր ՚ի մէջ կամարի լուսամտին, որ ՚ի ձախակողմեան դրան. և ապա յայժ վայելչակերպ սպիտակացան եկեղեցիք սուրբ Յակոբայ, սուրբ Էջմիածնի, սուրբ Ստեփաննոսի, և սուրբ Առաքելոց: Իսկ սուրբ Հրեշտակապետի եկեղեցին ևս ծեփեալ սպիտակացաւ, և երկաթի ճաղիւ և դրամբք գեղեցկացեալ պայծառացաւ:

Նա և անմիջապէս շինեցան քանի մի հոյակապ սենեակք միաբանութեան ՚ի վերայ Հոգետան, որ կոչեցաւ սուրբ Մինասայ Թաղ: Իսկ

շինեցան զոյգ սենեակք, մերձաւորուն և ներք-նաւորուն, 'ի մեծի գաւթի հանդէպ կրպակի մա-մլաճառութին։ Եւ քարայատակ եղև սոյն մեծ գաւիթն և այլ բազում տեղիք, և նորոգեցան բազում ջրհորք աւելի քան զքսան. նա և մե-ծագոյն ջրհորն կոչեցեալ Ֆէրման Օղլու, որ է կեսարացի Պետրոս եպիսկոպոսի յիշատակն։

Այլ և բազում ջանիւք հաստատեցաւ Տը-պարան 'ի պարծանս սուրբ Աթոռոյս, որ մին-չև ցայսօր ժամանակի չեղև երբէք 'ի նախնի Հարցն մերոյ։

Նա և յամի Տեառն 1837 շինեցաւ սուրբ Համբարձումն. և յամի 1839 հիմնայատակ ե-ղեալ կործանեցաւ 'ի ձեռն Լատինաց և Յու-նաց։

Յամի Տեառն 1840, 'ի քսան և հինգ ամսոյն Ապրիլի, Գաբրիէլ Սրբազան Պատրիարքն՝ փոխե-ցաւ առ Աստուած։ Եւ 'ի նոյն ամի՝ 'ի քսան և չորս Հոկտեմբերի յաջորդեաց նմա Զաքարիա Պատրիարքն՝ որ էր 'ի սահմանաց Տարօնոյ 'ի Կո-փոյ գեղջէ. յաւուրս սորա թէպէտ չեղև ինչ երևելի գործ և շինութիւն. սակայն պատրա-ստեաց զնիւթ շինութեան, և արար հիմնարկու-թիւն Թաղի միոյ, որ կոչէր Լիմոնի պարտէզ. էառ և զբանալի սրբոյ Ծննդեան արտաքին եր-կաթի դրանն ընկերութեամբ ընդ Յոյնս. բայց յետ միոյ ամսոյ՝ կաշառօք դարձեալ յետս ա-ռին Յոյնք զբանալին։

Յամի Տեառն 1841, եկն Անգղիոյ եպիսկո-պոսն յԵրուսաղէմ, և ձիրաւ հիմնարկութիւն

եկեղեցւոյ նորա․ որ եղև կատարումն շինու-
թեանն 1848։

Յամի Տեառն 1845, ՚ի սկիզբն Մարտի նորո-
գաւ Յունաց Պատրիարքն Երուսաղէմ, որ երկ-
կու հարիւր ամօք յառաջ մինչև ցայսօր Պատ-
րիարքն նոցա նստէր ՚ի Կոստանդնուպօլիս․ Թէ-
պէտ այժմ և ս է ՚ի Կոստանդնուպօլիս։

Յամի Տեառն 1846, ՚ի եօթն Մայիսի եղև
փոփոխումն Զաքարիա Պատրիարքի։

Յամի Տեառն 1847, ՚ի տասներկու Փետրվա-
րի յաջորդեցաւ նմա Կիրակոս Պատրիարքն Երու-
սաղէմացի, յաւուրս սորա շինեցաւ ՚ի Հայրա-
ւանդամն վանուցս, ՚ի վերայիշեալ Լիմնի պար-
տէզն նորոգ հայակապ Թաղ մի, հիմնարկեալ
՚ի Զաքարիա Պատրիարքէ․ որոյ երկայնութիւն է
155 ոտնաչափ, և լայնութիւն 75․ և ունի քառա-
սուն և ութն սենեակս․ և ՚ի միջի ընդարձակ գմբ-
էթ․ և ՚ի ստորհին գեղեցիկ պարտէզ, ունի և
եօթն ջրհորս․ և առաջի սենեկացն երկաթեայ
ճաղիւ ամրացեալ․ որոյ Աւագ դուռն մեծ ՚ի
ջրհորն, որ կոչի Քիլիճ Բաղչ․ և փոքր դուռն
մի՝ որ ելանէ ընդ հարաւ։

Նաև շինեցան քանի մի հայակապ սենեակք
՚ի յետոյս տաճարի սուրբ Յակոբայ եկեղեցւոյն
առ արևելս կոյս՝ ՚ի վերայ դրանն ազօրւոյն․ առ
որ ելանէ տասն և վեց աստիճանաւ, որոց լու-
սամուտքն երկուքն հային յարևմուտս դէպ ՚ի
սուրբ Տաճարն․ չորքն՝ ՚ի վերայ հրապարակին
մեծի, և միւսքն ՚ի հիւսիս ՚ի վերայ տանեաց
ազօրւոյն՝ և յարևելս։

տաղէմ, և եկեալ խառնեցան յայժ յամենայն ազ-գաց քրիստոնէից, այլ և 'ի հեթանոսաց և 'ի հրէից. յորոց ոմանք 'ի նոցանէ իբրև տեսին զսքանչելին՝ հիացեալ գոհութեամբ փառս վերառաքէին տուողին բարեաց, և ոմանք 'ի նոցանէ ապշեալ յանձկիւս լեալ բերանաբաց մնային, այսպէս տևեաց լոյսն մինչև ցերիս ժամուն.

Յամի Տեառն 1850, 'ի քսան և չորս Մայիսի յերկրորդ ժամու գիշերոյ՝ յանկարծ իմն եղև վախճան Կիրակոս Սրբազան Պատրիարքի. որում ընտրեցաւ յաջորդ 'ի Պօլիս 'ի չորս Յուլիսի, Զմիւռնացի Յովհաննէս Սրբազան Արքեպիսկո-պոսն, ըստ խնդրոյ համագումար Միաբանութեան սրբոյ Աթոռոյս, և ըստ միակամ և միահաւան ընտրութեան Ազգային ժողովոյն բաղկացելոյ 'ի Հո-գևորական և յաշխարհական երևելեաց 'ի Մայ-րաքաղաքն Կոստանդնուպօլիս, որ և նորին Սրբ-բազնութիւնն 'ի բազում ամաց հետէ վարէր զպաշտօն փոխանորդութեան սրբոյ Երուսաղէ-մի 'ի Կոստանդնուպօլիս. առ որ հրաւիրակ ա-ռաքեցան յԱթոռոյս՝ երեք վարդապետք, Մատ-թէոս Կեսարացին, Ղուկաս Բալուեցին, և Յա-կոբոս Կեղիպօլցին, և կրկին Սարկաւագունք. ընդ որս նորընտիր Սրբազան Պատրիարքն ելեալ 'ի Պօլսոյ՝ եկն եհաս յԵրուսաղէմ յիններորդ աւուր Նոյեմբերի. և 'ի տօնի սրբոյ Հրեշտա-կապետացն նստաւ յԱթոռ Պատրիարքութեան. որ այժմ խնամօքն Աստուծոյ վարէ զբարձրա-գոյն Իշխանութիւնն ամենայն բարեկարգու-թեամբ, որում Տէր տացէ զօրութիւն և կա-

բազմութիւն ընդ երկայն աւուրս 'ի պարծանս քաջութեան Ազգիս, և 'ի հաստատութիւն և 'ի պայծառութիւն սրբոյ Առաքելական Աթոռոյս։

Սա նախ՝ շինեաց և կառոյց վայելչագիր հայակապ վեհարան կամ Պատրիարքարան 'ի վերայ քառակի ամբակառոյց կամարաց, որ 'ի վերայ Արքունական պողոտայի. ընդ որում անցեալ գընայ առ հարաւ 'ի դուռն Դաւթի՝ 'ի Սիոն՝ և 'ի տունն Փրկիչ, և 'ի վերուստ է եզր նորակերտ Թաղին սրբոյն Մինասայ. որոյ Առաջդուռն է 'ի նոյն Թաղն, զորոյ յիշատակարանըն գնեմք աստ ամբողջ. « Եթէ ոչ Տէր շինէ զտուն, 'ի նանիր վաստակին շինողք նորա »։

Սոյնք սպաւինեալ 'ի շնորհս Տեառն խնամածութեամբ նորին 'ի հիմանէ կառուցաւ հոյակապս յարկս պանծալի Ազգասէր Ջանիւք Տ. Տ. Յովհաննու Սրբազան Արքեպիսկոպոսի Զմիւռնացւոյ՝ Պատրիարքի Առաքելական Աթոռոյս Երուսաղէմի, 'ի յիշատակ Հոգևորս նախնեաց, և 'ի պարծանս լութեան Ազգիս, և 'ի վայելչումն ապագայց հարց, 1853. 'ի վերջ Ապրիլի.

Երկրորդ դուռն է 'ի ներքոյ կամարաց, որ մտանէ ընդ արևմուտս՝ և հայի յարևելս։ Երրորդ դուռն հայի 'ի հիւսիս և մտանէ ընդ հարաւ, և է կից դրանն մեծի պարտիզաց. ընդ որ մտանէ նախ 'ի յառակացեալ բուրաստանն. և ապա չորրորդ դրամբ մտանէ 'ի խոհարանն, և անտի ելանէ 'ի լուացարանն, և 'ի ներքս 'ի վայելչազարդ սրահն, այն է տիվան. որոյ երեքին մեծամեծ լուսամուտքն հային յարևմուտս 'ի

և երկուքն առ հասարակ. և երկայնութիւն իւ-րաքանչիւրոցն է. եօթն կանգուն՝ և լայնութիւն վեց կանգուն և վեց մատն. և 'ի մէջ ունի սը-րահ՝ իբր հանգստարան ուղտանողաց, որոյ եր-կայնութիւնն է քսան և հինգ կանգուն և կէս. և լայնութիւնն ինն և կէս կանգուն. որոյ ա-ւագ դուռն հայի ընդ արևմուտս՝ 'ի Ձամբք Թա-ղին. և զօրութեամբ Տեառն մերոյ է կատարու-մըն շինութեանն յետ քանի ամաց, զոր Տէր յաջողեսցէ 'ի պարծանս սրբոյ Աթոռոյս և 'ի պայծառութիւն լուսաւորութեան ազգիս Հայոց:

Իսկ յամի Տեառն 1857, և 'ի փետրվարի 13, երջանկափառ Տ. Տ. Ներսէս Ե. Սրբազան Կա-թողիկոսն սրբոյ Էջմիածնի փոխեցաւ յան-ցաւոր կենցաղոյս աստի յանանց կեանսն երա-նութեան իբր իննսուն և չորս ամաց:

Իսկ 'ի սմին ամի՝ եղև սկզբնաւորութիւն նստելոյ 'ի սուրբ Երուսաղէմ արքեպիսկոպոսի միոյ 'ի Ռուսաց ազգէն:

Իսկ յայսմ ամի 1858, և 'ի Սեպտեմբերի մէկ, համակամ հաճութեամբ բոլոր լրութեան ազ-գիս Հայոց եկեղեցականաց և աշխարհականաց, որ յԱսիա և յԵւրոպիա ընդ իշխանութեամբ կրկին Մեծազօր տէրութեանց Օսմանեանց և Ռուսաց, ընտրեցաւ 'ի նոյն Սրբազնագոյն կա-ջաւն Կաթողիկոսութեան և մեծի Քահանայա-պետութեան լուսաւորչեան ժողովրդեանն ա-մենայն Հայոց՝ Կոստանդնուպօլսեցի Ամենապա-տիւ և Երջանկափառ Տ. Մատթէոս Առաքելա-գործ Սրբազան Արքեպիսկոպոսն, զոր Տէր 'ի պայ-

ծանս ազգիս բազմամեայ կենօք պարգևեսցէ ։

Եւ յայսմ ամի 1858, սկիզբն եղև ՚ի սուրբ Երուսաղէմ Նստելոյ Հիւպատոսի մեծի տէրութեանն ինքնակալին Ռուսաց, որպէս զՀիւպատոսս այլ տէրութեանց ։



# ՍՏՈՐԱԳՐՈՒԹԻՒՆ

## ՀԱՐԱՒԱԿՈՂՄԱՆ ՔԱՂԱՔԻՍ ՍՐԲՈՑ ԵՐՈՒՍԱՂԵՄԻ

### Աստի մինչ ՚ի ԲԵԹՂԵՀԵՄ երկու ժամ է ։

ՑՈՒՑԱՆ ՚ի դրանէ Դաւթի, որ ըստ Արաբացւոց կոչի պապըլ խալիլ ։ Յաջմէ կողմանէ առ պարսպաւ գնայ իջանէ ՚ի ձորն հովտին ըստ ոմանց մեկնչաց. յոր եկին լրտեսք՝ և տեսին անդ զհսկայս. «Տեսաք անդ հսկայս, և էաք յաչս նոցա որպէս մարախ»։ Թուոց. ԺԳ. 34 ։ Նոյանելով ընդ կամուրջն, և ընդ ցամաք աղբիւրն. ելանէ խուլն ինչ զառ ՚ի վեր ՚ի դաշտն. ՚ի ձախմէ ճանապարհին գոյ աւերակ մի՝ զոր կոչեմք Ցուղայի գիւղ. յորում է մզկիթ մի, այս է գիւղըն չար խորհրդոց զոր մեք ասեմք Ցուղայի գեղ, և յԱրաբացւոց կոչի փէր ադոլիօս. քանզի Կայիափայ քահանայապետս արար ժողով քահանայից և իշխանաց Հրէից, ուր մարգարէաբար վճռեցաւ վասն Քրիստոսի մեռանել. «Լաւ է մեզ, զի այր մի մեռանիցի ՚ի վերայ ժողովրդեանս, և մի ամենայն ազգս կորիցէ»։ Յովհ. ԺԱ. 50 ։ Զայս գիւղ գնեցին Յոյնք 1857 ։

Հանդէպ սորին է Նորաշէն քանի մի տուն Յունաց. յորս և միակողմն ոցին է Նորակերտ պալատ Հիւպատոսին Անգղիացւոց ։ Աստի իբր քարընկեց մի՝ է տուն կամ աշտարակ Սիմէօնի Ծերունւոյն, որ ՚ի քառասնօրեայ գալստեան Փրկ-

չին մերոյ՝ եկն ՚ի Տաճարն Սողոմոնեան, որ ըն-
կալաւ զնա ՚ի գիրկս իւր, և աղերսէր ՚ի Նմա-
նէ արձակիլ ՚ի խաղաղութիւն. Ղուկ. Բ. 28.

Դուն յաջմէ և յահեկէ ճանապարհին հնա-
գոյն աշտարակք աւերակ. զորոց ասեն ոմանք՝
լինել հնձան. և ոմանք՝ տեղի խորանաց երից
մոգուցն, և այլ ոմանք՝ այլ ինչ. ՚ի մէջ ճանա-
պարհի իբր տասն քայլիւ մերձ սուրբ Եղիայի
վանուցն՝ գոյ մեծ ջրհոր մի. զորմէ ասի աւան-
դութեամբ՝ թէ աստղն մինչ ցայս վայր երևե-
ցաւ մոգուց, և աստ անյայտ եղեալ՝ ծածկեցաւ
յաչաց նոցա. զոր Արաբացիք կոչեն պիր ըլ Նէճմ,
այսինքն հոր աստեղն. յաջմէ նորին արտաքոյ
ճանապարհին հեռի իբր քարընկէց մի՝ գոյ ա-
ւերակ եկեղեցի մի, յանուն Ամբակումայ մար-
գարէին, և է տեղի վանուց, ըստ պատմագ-
րութեանց Լատինաց. Դրէ Մարինոս՝ թէ ե-
րեք մղոնաւ հեռի յԵրուսաղէմէ, մերձ վա-
նուցն սրբոյն Եղիայի գոյր բևեկնի ծառն՝ ընդ
որով նստաւ Տէրն մեր հանդերձ Մարեմաւ
մարբն և Յովսեփաւ. բայց յամի Տեառն 1619,
այրեցաւ բևեկնին ՚ի ձեռն հողագործ Արա-
բացւոց.



## Յաղագս սուրբ Եղիայի վանացն ։

Ի ձախմէ ճանապարհին է վանք Եղիայի մարգարէին. ուր եկն մարգարէն, յորժամ փախչէր 'ի ձեռաց Յեզաբելայ. որպէս գրի, Գ. Թագ. ԺԹ. Ե. Ը. « Եւ նստաւ ընդ բեւեկնեաւ... եւ 'ի քուն եմուտ, եւ ննջեաց ընդ տընկովն »։ Սորա եկեղեցւոյ երկայնութիւնն է 92 ոտնաչափ, եւ լայնութիւնն 51։

Սա էր յառաջագոյն ազգին Վրաց. եւ է այժմ 'ի ձեռս Յունաց. աստ ննջեաց մարգարէն, որոյ տեղին ցուցանեն յեկեղեցւոջ 'ի հիւսիսային յորմն, որ է 'ի ձեւ գերեզմանի, յորում գոն բազում մեծամեծ սենեակք. եւ շուրջ նովաւ բազում ձիթենիք եւ այգիք. արտաքոյ վանուց 'ի վերայ ճանապարհի գոյ ջրոյ ջրհոր մի, յորմէ երթեւեկք ըմպեն. եւ յաջմէ պողոտային է ձիթենի մի, եւ 'ի ներքոյ նորին վէմ մի հաւասար գետնոյն փոսորակ իբր մարդաչափ, եւ ասենք աստէն՝ թէ աստ ննջեաց մարգարէն։



## Վասն աշտարակին Յակոբայ՝ եւ գերեզմանին Ռաքելայ ։

Իբր կէս ժամու հեռի 'ի սուրբ Եղիայի վանուցն, 'ի ձախմէ ճանապարհին գոյ աւերակ մի, որ է Աշտարակն, ուր էջ Յակոբ նահապետն մինչ գայր 'ի Միջագետաց։ Եւ 'ի ձախմէ է գերեզման Ռաքելայ, զի յերկուսս գոլով

Ռաքէլ՝ ուր ծնաւ զԲենիամին. մեռաւ և թա-
ղեցաւ անդ. և կանգնեաց Յակոբ արձան 'ի
վերայ շիրմի նորա: "Եւ եղև իբրև մերձեցաւ
'ի Քաբրաթա երկիր, մտանել յԵփրաթա. ծը-
նաւ Ռաքէլ... մեռաւ Ռաքէլ և թաղեցաւ 'ի
ճանապարհին Եփրաթայ, այն իսկ է Բեթղե-
հէմ. և կանգնեաց Յակոբ արձան 'ի վերայ շիր-
մի նորա, այն է արձան շիրմի Ռաքելայ մինչև
ցայսօր ". Ծնն. ԼԵ. 16. 20:

## Յաղագս վիմին Քրիստոսի:

Յելանելն 'ի վանուցն սուրբ Եղիայի, յաջ-
մէ ճանապարհն՝ որ գնայ 'ի Քեբրոն. այն է
հայր Աբրահամ, արտաքոյ ճանապարհին 'ի ձախ-
մէ. կայր քարընկէց մի առ արևմուտս, գոյ վէմ
մի, որոյ մէջն փորեալ և փոս, և ձևացեալ իբր
օրօրոց. զորմէ ասեն՝ թէ 'ի կոտորելն մանկանց,
առեալ Մարիամ և Յովսէփ զմանուկն Յիսուս՝
կամէին փախչիլ յԵգիպտոս, հասին զինուորք
նոցա առ 'ի սպանանել զմանուկն, անդ մատեալ
թագեան, և անտես եղեն յաչաց նոցա:

Եւ ըստ ոմանց՝ թէ կին ամն զմանուկն իւր
պահեաց անդ, և մինչ աղերսանօք աղաչէր
զԱստուած վասն մանկանն, և յուսաբեկ լինէր,
ետես զհոգիս մանկանց կոտորելոցն իբրև զե-
րամս աղաւնեաց թռուցեալք յերկինս, յան-
կարծ 'ի բաց եղեալ զգութն մայրական, եկն

առ գահոյիւքն, և մատնեաց զմարմինն իւր նա-յել. զոր 'ի խողխողելն անողորմ դահճացն, կատարիչն աստուածէր ժողովի մանկանն իւր լուա-ստանեալ աղաւնի թռուցեալ յերկինս: Տես 'ի Յայսմաւուրս. Մովսէսի քահանայի:

### Վանք Պէլէճօղլայ գեղջն:

Հանդէպ գերեզմանի Ռուբէլոյ՝ հեռի 'ի նմանէ իբր տասնեհինգ քայլ, է գիւղն Պէլէ-ճօղլայ, որոյ բնակիչքն են Յոյնք. զորմէ ասեն՝ գոլ տուն Եփրաթա. և ոմանք թէ՝ է տուն Աբի-աթարայ քահանային, ուր եկեր Դաւիթ զհացն առաջաւորութեանն. Ա. Թագ. ԻԱ. 6: Կոյ անդ փոքրիկ եկեղեցի մի յանուն սրբոյն Նիկողայոսի, որոյ երկայնութիւնն է 32 ոտնաչափ, և լայնու-թիւնն 24:

Յորժամ գիւղս շինեցին Լատինք 12 ամա-յառաջ ժամանակաւ մի, բայց յամի 1854 յամ-սեանն փետրվարի յափշտակեցին Յոյնք, և վա-նեցին անտի զԼատինս:

Նոյն յամսեանն Օգոստոսի, հրովարտակաւ Սուլթան Մէճիտ արքային սկսան Լատինք հիմ-նարկել և շինել անդ հոյակապ վանք նորոգ 'ի հիմանց յարևելս կոյս հնոյ տեղւոյն. որոյ եր-կայնութիւնն է 174 կանգուն, և լայնութիւնն 124. շրջապատ պարիսպն չորեքին դրամբք, որոց երկուքն յարևելս, մին առ՝ հիւսիս, և միւսն

առ Հայոց ։ Որոյ եկեղեցւոյ երկայնութիւնն է 95 ոտնաչափ, և լայնութիւնն 35. և սենեակ 50 ոտն և փոքր. և 'ի միջի ունին յատուկ վարժարան և Ջրհոր հինգ. քան և չորս աշակերտա-տուն և չորս կարգաւոր, որոց բոլոր միաբանքն են յիսուն ։

## Յաղագս Ջրհորոյն Դաւթի ։

Ի գերեզմանէն Բարսեղայ մինչ 'ի Ջրհորն Դաւթի է իբր տասն րոպէ 'ի գլուխ լերինն 'ի բարձրաւանդակ տեղւոջ, ուստի երևի քաղաքն Բեթղեհեմ. յորոյ ջրոյն ցանկայր Դաւիթ ըմպել, որպէս գրի . Բ . Թագ . ԻԳ . 15 . 16 . Ո՜վ ցանկացաւ Դաւիթ և ասէ, ո՞ արբուցանէր ինձ ջուր 'ի Ջրհորոյն Բեթղեհեմի, որ առ դրանն է դ. որպէս ասի և յառաջնաւորս. Առեալ զջուր մարգարէին, եհեղ առ տէր իւր արարչին. Հարն օրինակ սորա Կուսին, ջուրն հանդոյն՝ մերոյ Փրկչին, որում ցանկայր՝ երանելին, հոգւով ըմպել՝ ջուր կենդանին ։



Յաղագս քաղաքին Դաւթի, որ է Բեթղեհէմ։

Բեթղեհէմ ըստ վարդապետաց՝ թարգմանի տուն հացի. յորում տուաւ մեզ Հացն կենաց իջեալն յերկնից. Յովհ. Զ. 51. «Ես եմ հացն կենդանի որ յերկնից իջեալ»։

Եւ 'ի լեզու Արաբացւոց՝ նշանակէ տուն մսոյ, զի անդ ծնեալ բանն Աստուած, ետ մեզ զմարմին և զարիւն իւր 'ի կերակուր և ըմպելի հոգւոց. «Զի մարմին իմ ճշմարիտ կերակուր է. և արիւն իմ ճշմարիտ ըմպելի է»։ Յովհ. Զ. 56։

Թէպէտ քաղաքս այս ըստ նիւթոյն և ըստ քանակութեան կրտսեր և փոքր համարիւր, բայց ըստ զօրութեան մեծագոյն քան զամենայն քաղաքս՝ որ յերկրի. քանզի Իշխան իշխանաց՝ և Տէր տէրանց ել աստի, և հզօր քան զամենայն իշխանս Յուդայ՝ որք ելին 'ի սմանէ. «Եւ դու Բեթղեհէմ տուն Եփրաթայ՝ սակաւաւոր իցես լինել 'ի հազարաւորս Յուդայ. 'ի քէն ելցէ ինձ լինել իշխան Իսրայէլի, և ելք նորա 'ի սկզբանէ աւուրց աշխարհի»։ Միքիա. Ե. 2։

«Եւ դու Բեթղեհէմ երկիր Յուդայ. ոչ ինչ կրտսեր ես յիշխանս Յուդայ. 'ի քէն ելցէ ինձ իշխան, որ հովուեսցէ զժողովուրդ իմ զԻսրայէլ»։ Մատթ. Բ. 6։

Բնակիչք Բեթղեհէմի՝ են քրիստոնեայք, Յոյնք և Լատինք իբրև հարիւր տուն. և ազգ Մեր քսան տուն. քանի մի տուն Խփտի. և քառասուն և հինգ տուն Տաճիկք, և 'ի նմա են հնգետասան թաղք, որոց իշխանք կամ աղայք են հնգետասա-

պատուն Տէր է . մեք աւել ածեմք և սրբեմք , և ունիմք կանթեղ մի առաջի Թըլիստաւութեան խարանին . 'ի ձախմէ նորին Հօր և պահարան մեծ վասն զգեստուց մերոց . և ունի խորանն՝ և լուսամուտ յետուստ խորանին , և լուսամուտ մի առ հիւսիս , և յանկիւնէն մինչ 'ի յանկիւնն արևելս է լուսամուտ մի ևս , և պատկեր մեծ Վերափոխման . առաջի նորա կանթեղ մի և մոմակալ ջահ մի ևս միով կանթեղիւ . վեց կանթեղ 'ի գլուխ սարիձանաց սուրբ Այրին , և երկոտասան կանթեղք յաջմէ և յահեկէ սեանն , և պատկեր մի 'ի վերայ սեանն , և աշտանակ առաջի նորա . կրկին կանթեղք առաջի խորանին Տերոյ , մոմակալ ջահ մի ևս միով կանթեղիւ , և կրկին կանթեղ ևս 'ի ձախակողմեան դրան , վեց կանթեղ ևս առաջի շրջապատ պատկերաց . 'ի ձախակողմն մինչ առ Ամպին մեր . և հանդէպ Աւագ սեղանին մերոյ է դուռն մի անուանեալ Լատինաց , ընդ որ գան 'ի յԱյրն և գնան . բայց 'ի գրանէն մինչ 'ի Ճանապարհն՝ որ գնայ յԱյրն , ոչ սփռեմք փսիաթ կամ գորգ , ուստի զգուշանալ պարտիմք , զի մի կագ և կռիւ լինիցի . զի 'ի բազում ամս եղև կռիւ , յորմէ բազում վնաս եղև և ոչ մի ինչ օգուտ մեզ , և նոցա . իսկ չորս սիւն 'ի մէջ որմոյն են և չորքն 'ի մէջ եկեղեցւոյ . երկուքն՝ 'ի յետուստ կողմանէ Աւագ խորանին և Այրին , որք լինին յիսուն սիւնք :



Յաղագս սուրբ Այրին, ուր ծնաւ Տէրն մեր։

Սուրբ Այրն ունի զերկուս դրունս, 'ի ձախմէ Աւագ խորանին դուռն՝ որ առ Հիւսիս, երկոտասան աստիճանաւ իջանեն յԱյրն. յաջմէ խորանին որ առ Հարաւ, որ է Մեր դուռն, իջանեն յԱյրն տասնևվեց աստիճանաւ. 'ի ձախակողմ դրանս ունիմք փոքր պատկեր մի. և կանթեղ մի, նոյնպէս և Յունաց, ըստ որում ընկերութեամբ է. 'ի վերայ սրբոյ տեղւոյն ծննդեան ունիմք վեց կանթեղս մշտավառ. նոյնպէս վեց Յունաց, և չորս Լատինաց, բոլորն տասն և վեց։ Իսկ 'ի շրջապատի փոքր պատկերքն են Յունաց. և կեդրոն սուրբ Տեղւոյն է բոլորակ փոս, և արծաթապատ, որոյ շրջապատն և յատակն կճեայ քարամբք յարդարեալ. և 'ի վերայ նորա սեղան պատարագամատոյց, յորոյ վերայ անխափան յամենայն աւուր պատարագեմք։ նախ՝ Յոյնք, և ապա Մեք. յաւարտ պատարագին Յունաց՝ նախ դնեմք զպատկեր խորանին, խաչ, Աւետարան, չորս աշտանակս. և յիշատակարանս արծաթապատ. զկնի սուրբ Պատարագին մերոյ 'ի բաց առնումք անտի զամենայն, և լուսարարն Յունաց փակէ զխորանն վանդակաւ. զի ոչ է սովորութիւն պատկերաց մնալ անդ, ոչ նոցա և ոչ մերն. 'ի ճակատ խորանին ունիմք զերկուս փոքրիկ պատկերս. և 'ի չորս յաջմէ և յահեկէ մետասան կանթեղս, նոյնչափ և Յունաց և Լատինաց գոն։

Իսկ 'ի մէջ ծննդեան և Մսրոյ սուրբ Տեղեաց

գոյ կճեայ սիւն մի, որոյ առաջի դրան եկեղեցին աշտանակք մշտավառ. աջակողմեանն՝ Մեր է, միջինն Յունաց, և ՚ի ձախմէ եղեալն Լատինաց. յաջմէ և յահեկէ սեղանն՝ երեք երեք աստիճանաւ իջանէ ՚ի սուրբ Մսուրն, յորում եղա մանկացեալն Յիսուս. որոյ յատակն և շրջապատն մարմարիոնեայ քարամբք յօրինեալ. յորոյ միջոյ հինգ կանթեղ մշտավառ և վանդակապատ. Հանդէպ Մսրոյն՝ խորան մի է, յոր պատարագեն Լատինք միայն. ուր ընծայամատոյց եղեն երեքին մոգքն. Մսուրն կայ առ արևմուտս, և սեղանն՝ յարևելս, և վանդակապատ, և են ՚ի ձեռս Լատինացւոց. ունիմք անդ ՚ի Յայրին երկու պատկեր ՚ի յարմն Հարաւոյ, և երկու ՚ի հիւսիս. և երկու՝ յարևմուտս. Այրի երկայնութիւն է 40 ոտնաչափ. և լայնութիւնն 11. յատակն և որմքն են բովանդակ մարմարիոնեայ. ՚ի կողմն արևմտեան գոյ դուռն՝ ընդ որ մտանէ ՚ի պահարանս նշխարաց կոտորելոց սուրբ Մանկանց. անդ են և գերեզմանք Հերոնիմեայ վարդապետի Լատինաց. և Եւսեբիայ աշակերտի նորին ընդ Մարինայ, և այլ խորանս. և անտի քանի հինգ աստիճանաւ ելանէ յեկեղեցին Լատինաց. զորմէ ունիմ խօսել ըստ կարգի:

Ի յետուստ Աւագ խորանէ Յունաց մինչ յաւագ դուռն՝ երկայնութեամբ է 93 ոտնաչափ. ՚ի հիւսիսոյ կողմն կամարին յատակէն մինչ ՚ի Հարաւակողմն Յունաց՝ 180 ոտնաչափ. գոյ մեծ դուռն՝ ընդ որ ելանէ յերկուց կողմանց քանի աստիճանաւ. և մտանէ ՚ի վանս Յունաց. ՚ի ձախ-

մէ Յիսուսի խորանին ուխտին ամենափրկչական՝ բարձր է յառաջ ի եկեղեցի մի յանուն սուրբ Գէորգայ, յերկրորդին կողմանն ամենակի․ յարեւմտաս և առ հասարակ ունի զերկրորդն դրունս՝ ընդ որս մտանէ 'ի տաճարն նորա․ և առաստաղ եկեղեցւոյն և մեծի պարսպին է նորաշէն և փայտակերտ յանդուսա փայտակէ, յորոց վերայ համակ կապար անխախտական, և յատակին բոլոր մարմարիոնեայ քարամբք յօրինեալ․ որ նորոգեցաւ յամի 1843։

---

## Յաղագս վանաց Մերոյ․

Վանքն Մեր է յարևմտակողմն մեծի եկեղեցւոյ սուրբ Ծննդեան, և ունի եկեղեցին երրեք խորանս․ Աւագ խորանն՝ յանուն սուրբ Աստուածածնի, աջակողմեանն՝ սրբոյն Յակոբայ․ և ձախակողմն՝ սուրբ Ստեփաննոս․ և յաջմէ նորին Գաւհարան, յանուն Յովակիմայ և Աննայի․ որոյ երկայնութիւնն է 40 ոտնաչափ, և լայնութիւնն 31․ և զեղեցկակերպ համակ կըճեայ սուրբ Աւագան․ որ շինեցաւ յամի Տեառն 1848 'ի յիշատակ Մչեցի Թադէոս ծերունազարդ հոգևորի վարդապետին․ բայց բնակիչք Բեթղեհէմի անուանեն զայս եկեղեցի սուրբ Յակոբ, վասն զանազան պատճէնագործութեանն․ զի բազում ախտաւորաց եկեալ անդ բժշկին, զոր նորոգեաց Գ. Պարոնտէր Հայրապետն, 'ի թվ. Հայոց՝ ՌՀ․ յամի Տեառն 1620։

Եւ ապա ՚ի Թիւ Հայոց՝ ՌՃԴ. վերստին նորոգեաց Գրիգոր Հայրապետ Շղթայակիր անուանեալն, յամի Տեառն 1726. և արքունական հրամանաւ եբաց զներքին եկեղեցին. և արքագործեաց անդ զերիս խորանս յանուն ամենասուրբ Երրորդութեանն. բայց այժմ սեղանատուն ձևացեալ է այն. Տես ՚ի Հանձն պատմութիւն, յերես 163։ Որոյ գաւթի երկայնութիւնն է 22 ոտնաչափ, և լայնութիւնն 28։

Յամի Տեառն 1830 մինչ ՚ի 1850, հետզհետէ մանաւանդ օրաքար նորոգեցան անդ սենեակք և այլ կարևոր տեղիք, և ջրհորք, և ունի քանի մի սենեակս, յատուկ Պատրիարքարան, սեղանատուն, փուռն հացի, և խոհարան մեծ, և ջրհորս վեց. ունի երկու գաւիթ, և պարտէզ լիմոնի. և յատուկ ձիթահանք մի ևս հաստատեցաւ յամի Տեառն 1858. արդեամբք և ջանիւք ծերունազարդ Տեսուչ Եղիա վարդապետին. և արտաքոյ վանուց բազում ձիթաստանս, և յատուկ Տեսուչ և Միաբանք. որք անխափան կատարեն զպաշտօն ժամերգութեան, և մատուցանեն յամենայն աւուր ահաւոր խորհուրդ սուրբ Պատարագին ՚ի վերայ հրաշափառ ծննդեան երկրպագելի սուրբ Տեղւոյն. և երբեմն ըստ պատշաճին յայլ սուրբ խորանս և ՚ի վանս, ՚ի փրկութիւն հոգւոց կենդանեաց և ննջեցելոց Ազգիս. և դաստիարակ մի ևս կայ անդ, որ վարժէ և մարզէ զմանկունս Ազգիս մերոյ։



# ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆ

## ՍՐԲՈՑ ԾՆՆԴԵԱՆ ԵԿԵՂԵՑԻՈՑՆ՝ ՍՈՒՐԲ ԱՅՐԻՆ, ԵՒ ՎԱՆՈՒՑ ՄԵՐՈՑ

### Յաղագս զանգակին և կոչնակին Մեր և Յունաց:

Յամենայն գիշերի 'ի սկիզբն ժամերգութեան Յունաց ըստ սովորութեանն. նախ՝ նոցա զանգակն հնչի, և եկեալ պաշտեն յԱւագ խորանն զժամերգութիւնս իւրեանց. ապա մերձ յաւարտն զմեր զանգակն հնչեմք, և իջեալ կատարեմք անդ զգիշերային ժամերգութեան պաշտօնն, զի մի խառնակ լինիցին ձայնք ժամերգութեան մեր և նոցա, և ձանձրացուցիչք միմեանց: Բայց յերեկոյին նախ զանգակն մեր հնչեցուցանեմք ըստ միշտ սովորութեանն, և իջեալ պաշտեմք զժամերգութիւնն. և զկնի աւարտմանն հնչի զանգակն Յունաց, և եկեալ կատարեն զժամերգութեան պաշտօն իւրեանց:

### Յաղագս խնկարկութեան:

Միշտ անխափան յամենայն աւուր թէ 'ի գիշերի և թէ յերեկոյի, մեր բուրվառն պարտ է գնալ 'ի սուրբ Այրն 'ի խնկարկել. բայց 'ի գիշերի. կամ նախ քան զԹիւ պատարագն Լա-

տինաց գնալ պարտիմք, կամ յետոյ. և մինչ Լատինք, կամ Յոյնք պատարագեն անդ, չէ՛ պարտ մեր խնկարկու Սարկաւագին իջանել 'ի սուրբ Այրն, այլ սպասել մինչև աւարտեսցեն զպաշտամունս իւրեանց:

## Յաղագս գալստեան Ուխտաւորաց մերոց:

Ի գալ տէրունական Ուխտաւորաց մերոց՝ նախ լուսարարն մեր ազդ առնէ Յունաց լուսարարին, զի բացցէ զվանդակ սրբոյ ծննդեան սեղանոյն, ուր դնեմք զսուրբ Պատկերն, խաչ, Աւետարան, և աշտանակս, և ծածկոյթս, և զհարկաւոր իրս:

Նաև ազդ առնեմք Լատինաց լուսարարին, գիտել և տեղեկանալ, թէ յայնմ ժամու ունի՞ն ելանել 'ի Թափօր կամ 'ի խնկարկութիւն, թէ ոչ՝ եթէ փութով կամին ելանել, սպասեմք մինչև յիջանելն նոցա 'ի սուրբ Այրն՝ և 'ի վերադառնալն. ապա եթէ անագան ունին գալ, յայնժամ տանիմք զՈւխտաւորսն մեր 'ի սուրբ Ծնունդն, առաջի դրան սուրբ Այրին տայ լուսարարն շուրջառ և խաչ Կառավարչին, խնկօք և մոմեղինօք:

Սարկաւագն՝ ասէ 'ի ձայն, Եւ ես խաղաղութեան:

Վարդապետն՝ Օրհնութիւն և փառք. ասելով Շարական, թէ. “Խորհուրդ մեծ և սքանչելի” իջանեն 'ի սուրբ Այրն: Աւետարան, Ղուկ. Բ. 8. 20. “Եւ հովիւքն էին”. Եւ երգի ձայնիւ

« փառք 'ի բարձունս աստուծոյ »։ Նմանապէս, « Եւ եղև իբրև վերացան »․ « Եւ յամենայն ժամ օրհնեմք զքեզ »։ Նոյն․ « Արեգական արդարութեան »․ « Ի վայելչութիւն սրբոց »։

Սարկաւագն, Խնդրեսցուք հաւատով միաբան։

Դպիրն, Կեցո՛ տէր․ Տէր ողորմեա՛։

Վարդապետն, Քում ամենազօր և հրաշալի։ Նշա համառօտ ծանուցումն։

Սարկաւագն, Սուրբ խաչիւս աղաչեսցուք։

Վարդապետն, Պահպանիչ և յոյս հաւատոց։

Բայց պարտ է զգուշանալ, 'ի ժամ' Թափօրի Լատինացւոց․ չթողուլ զխաչ, զաւետարան, զաշտանակս, և զծածկոյթս մեր 'ի վերայ սեղանոյն, այլ պատկերն միայն մնասցէ անդ․ ապա եթէ անընտել և համբակ լիցի լուսարարն մեր, և ոչ բարձցէ զնոսա 'ի սեղանոյն, յայնժամ լինի խառնակութիւն' կարգ և կարիւ ընդ Լատինս։ Նաև յետ կատարելոյ զՊաշտօն իւրեանց, զսուրբ Պատկերն և զայլ' որ ինչ կայ 'ի վերայ սեղանոյն, պարտիմք 'ի բաց առնուլ անտի․ ապա Յունաց լուսարարն եկեալ ըստ սովորութեանն փակէ վանդակաւ զխորանն, և գնայ․ զի զվանդակն բանալն և փակելն է պաշտօն նորա, և ոչ մեր։



## Յունվարի հինգ և վեց ։

Ի Հրաշափառ սուրբ Ծննդեան ճրագալուցի երեկոյին ըստ սովորութեանն, զՍրբազան Պատրիարքն մեր և կամ զՀանդիսապետն Հանդիսիւ տանիմք 'ի սուրբ Այրն. բայց նախ պարտիմք դնել զսուրբ Պատկերն 'ի խորան սուրբ Ծննդեան, ուր մնայ անխախտ մինչ ցերիս աւուրս ըստ միշտ սովորութեանն, ապա յերրորդում աւուր զկնի սրբոյ Պատարագին մերոյ 'ի բաց տանումք անտի։ Ընդ` խաչիւ և աւետարանաւ, և աշտանակօք, և ծածկութիւ զարդարեմք զսուրբ Այրն, զամենայն կանթեղս և զջահս և զմոմեղէնս լուցանեմք. և արկանեմք զորգ առաջի սուրբ Տեղւոյն։ Նաև պատրաստել պարտիմք կրկին զոյգ աւետարանաբարձս, չորք զոյգ դպիրս լուսակալ. զոյգ բուրվառ, գաւազանակիր, և զոյգ քշոցաբարձս, և շար 'ի շար դասակարգել 'ի մեծի գաւթի յաջմէ և յահեկէ փայտաշէն մեծի դրանն.

Ապա իջանէ Սրբազան Պատրիարքն հանդերձ Ուխտիւք եկեղեցւոյ 'ի փոքր գաւիթն. ուր 'ի յետուստ փայտեայ մեծի դրանն տայ Աւագ լուսարարն նմա շուրջառ, խաչ, և գաւազան։

Սարկաւագն` ասէ 'ի ձայն, Եւ ես խաղաղութե։

Հանդիսապետն, Օրհնութիւն և փառք հօր. և արկանէ խունկ 'ի բուրվառն ։

Դասապետն` ըստ դասին երգէ քաղցրաձայն, Շարական` Տէ. « Հրաշափառ աստուած »։

Մինչ հասանի առ դրան սրբոյ Այրին, եր-

գէ Շարական՝ գջ. «Ուրախ լեր որ եկեղեցի», և իջանեն 'ի սուրբ Ծննդեան Այրն, և այլն. որ ըստ կարգին։

Յետ կատարելոյ զՈւխտս հուրեանց, պաշտի ժամերգութիւնն առաջի Աւագ խորանին մե- րոյ, և սուրբ Պատարագն մատուցանի 'ի վերայ սրբոյ Ծննդեան սեղանոյն, և զկնի սրբոյ Պատա- րագին ասելով Շարական, դէ. «Խորհուրդ մեծ և սքանչելի», տանիմք զՄրբազան Պատրիարքն 'ի վանս մեր 'ի սեղանատունն։ Աւետարան, «Եւ հովիւքն էին». «Փառք 'ի բարձունս այ»։ Աւետարան, «Եւ եղև իբրև». «Եւ յամենայն ժամ օրհնեմք զքեզ»։ Երգ. «Արեգակն ար- դարութեան»։

Սարկաւագն, Խնդրեսցուք հաւատով միաբան։

Դպիրն, Կեցո տէր. Տէր ողորմեա։

Վարդապետն, Քում ամենազօր և հրաշալի։

Սարկաւագն, Սուրբ խաչիւս աղաչեսցուք։

Վարդապետն, Պահպանիչ և լոյս հաւատոյ։

Նաև նախ քան զերեկոյի ժամերգութիւնն դնի կրկին մեծ աշտանակ յաջմէ և յահեկէ դը- րան սուրբ Այրին 'ի վերին աստիճանին, ուր մնայ մինչ յերկրորդ օրն. ապա զկնի սուրբ Պա- տարագին 'ի բաց տանումք անտի. քանզի Լա- տինք ևս 'ի ծննդեան հուրեանց, և յայլ տէրու- նական աւուրս Տօնից դնեն զոյգ մի աշտանակ 'ի վերայ ներքին աստիճանաց, ըստ Մեզ և ըստ Լատինաց առնեն և Յոյնք դնելով առաջի երկ- րորդ դրանն։

Յայսմ երեկոյիս ազդ առնէ Թարգմանն մեր

Յունաց. իբր հրաման առնուլ. զի առաջի Աւագ խորանի նոցա սփռեմք կարպետ և սփրիդյորոց վերայ կանգնին ժողովուրդ մեր։

Նոյնպէս և յերեկոյի և յառաւօտու ծննդեան Յունաց ազգ առնեն մեզ, զի ժողովուրդք նոցա կանգնին 'ի Մեր եկեղեցին. վասն որոյ զգօրգ և զամենայն ինչ 'ի բաց առնումք անտի, և զմի ոմն 'ի մէնջ պահապան կացուցանեմք անդ. զի մի՛ վնաս տացեն խորանաց և պատկերաց մերոց։

Յայս երիս աւուրս ըստ որում սուրբ Պատկերն մեր մնայ անխախտ 'ի սուրբ ծննդեանն խորանին, ուստի Յոյնք 'ի ժամ պատարագի իւրեանց զպատկերն դնեն առաջի մերս պատկերին. և զկնի պատարագին 'ի բաց բառնան։ Նոյնպէս և մեք 'ի նոցին ծննդեան երիս աւուրս զսուրբ Պատկերն մեր դնեմք առաջի պատկերին նոցա, և յետ սրբոյ Պատարագին 'ի բաց առնումք։ Նոյնպէս առնեմք մեք և նոքա եթէ հանդիպիցի Ուխտաւոր յայս երիս աւուրս՝ դնի պատկերն, և այլ ամենայն ինչ. և ապա բառնի անտի։

Ի 13 Դեկտեմբերի, Լատինացւոց ծննդեան յառաւօտու միայն որքան կարգաւոր գտանիցի անդ, երեք երեք անգամ թիւ պատարագեն 'ի խորան սուրբ Մորոյն. վասն որոյ համբերութիւն պարտիմք սպասել մինչև ցվերջն. բայց հանդիսաւոր պատարագն 'ի վանս իւրեանց առնեն։

Ի 25 Դեկտեմբերի, Յունաց ծննդեան, Խփտին և Ասորին գան 'ի սուրբ ծնունդ՝ 'ի

վանս Մեր. Ղպտին պատարագէ յերեկոյի և յառաւօտու յԱւագ խորանն մեր, և Ասորին 'ի Թլփատութեան խորանն մեր. բայց Ասորւոց պատարագի զգեստն Մեք տանք, ըստ սովորութեանն:

Ի Մեր սուրբ ծննդեան յերեկոյի և յառաւօտու Յոյնք ըստ կարգադրութեան զժամերգութեան պաշտօն 'ի վանս իւրեանց կատարեն, բայց պատարագն ըստ կարգի է. որպէս յայլ աւուրս. Նախ Նոքա պատարագեն, և ապա մեք հանգիստաւոր:

Այնպէս և Յունաց ծննդեան յերեկոյի և յառաւօտու զպաշտօն ժամերգութեան 'ի վանս Մեր ունիմք կատարել, այսինքն 'ի վերին եկեղեցւոջ. բայց պատարագն ըստ կարգի է. նախ Նոքա հանգիստաւոր, և ապա մեք:

Ի սուրբ ծննդեան գիշերի՝ զՏէր յերկնից առեալ իջանեն 'ի սուրբ Այրն, և ընթեռնուն անդ զԱւետարանս, զկնի Սուրբ աստուածին՝ «Խորհուրդ մեծ» առեալ ելանեն 'ի վեր, բայց երբեմն զԱւետարանն հանդէպ առաջի դրան սուրբ Այրին ընթեռնուն. և ապա սուրբ Պատարագն մատչի յԱւագ խորանն՝ և սուրբ Մկրտութեան խորհուրդն կատարի անդ. և ապա հանգիստաւոր պատարագն մատչի 'ի վերայ սրբոյ ծննդեան տեղւոյն՝ զկնի պատարագին Յունաց:

Նաև 'ի մեծի Հինգշաբաթի աւուր պատարագն 'ի սուրբ Այրն է. բայց Ոտնլուային կատարի յերեկոյին առաջի Աւագ խորանին:

Իսկ 'ի մեծի Ուրբաթու գիշերային ժամեր-

գութիւնն առաջի Աւագ խորանին կատարեմք, նոյնպէս և զԹաղմանն արարողութի յերեկոյին անդ անօր առնեմք ըստ նախնի սովորութեանն։

Ի Վերափոխման կիւրակէի զկնի սուրբ Պատարագին մերոյ 'ի սուրբ Այրն Ծննդեան խաղող օրհնի։

Ի Ծաղկազարդի առաւօտու ըստ սովորութեն Հայաստանեայցս անդաստան առնեմք անդայլ 'ի Թափօր ոչ ելանեմք որպէս զՑոյնս 'ի մեծ գաւիթն. զի չէ՛ սովորութիւն, և արգելուն զմեզ։ Բայց դռնբացէքի խորհուրդն երեկոյեան 'ի վանս մեր կատարեմք. զի ըստ սովորութեանն անդ գան ժողովուրդք մեր, և բանան զվարագոյրն ձրի։

Ի հինգ Տաղաւարս եթէ Սրբազան Պատրիարքն, կամ յԵպիսկոպոսաց մին ոչ եկեսցէ 'ի սուրբ Ծնունդն՝ յերեկոյի և յառաւօտու ըստ սովորութեան զՏեսուչ տեղւոյն՝ Շարական ածելով ըստ պատշաճի, 'ի սուրբ Ծննդեան եկեղեցւոյն տանիմք 'ի վանս մեր։

Յաղագս լուացման սուրբ Տեղւոյն։

Յամենայն շաբաթու կրկին անգամ 'ի Չորեքշաբաթու և 'ի Շաբաթ աւուրս անխափան լուանամք և մաքրեմք զՔրիստոսի Ծննդեան սուրբ Տեղին միայն, թէպէտ և յառաջ աւել ևս ածէաք 'ի սուրբ Այրն, բայց այժմ խափանեալ է 'ի Հակառակորդաց։

